# ԼԵՆԻՆԻ ԴԱՄԲԱՐԱՆՈՒՄ

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

Պառկած է նա լույսերի մեջ,
Ասես քնած է հանգիստ,
Ու թվում է, թե լույսերն այդ
Ճառագում են իր սրտից:

Ո՛չ, նա ինքն է միայն քնած,
Մինչդեռ արթուն է հոգին,
Հույս է տալիս, լույս է սփռում,
Առաջնորդում է կրկին:

Նա մեր մեջ է, մեր սրտերում,
Մեր գործերում, ամենուր.
Նրանո՛վ է շնչում, աճում
Երկիրը մեր օրավուր:

Ն. Կ. ԿՐՈՒՊՍԿԱՅԱՅԻ ՆԱՄԱԿՆԵՐԻՑ՝ ՈՒՂՂՎԱԾ ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ

# ԿԱԶՄԱԿԵՐՊԻՐ ԻՆՔԴ ՔԵԶ

Գիտնականները, գրականագետները, պրոֆեսորները սովորություն ունեն նույն ժամին պառկել քնելու, վաղ վեր կենալու, որպեսզի առավոտները թարմ գլխով պարապեն։ Փոխայցելությունները հասցնում են նվազագույնի, որոշում են, թե օրվա որ ժամին ինչ պետք է անեն։ Նրանք խստիվ պահպանում են վեր կենալու, աշխատելու, ճաշելու, հանգըստանալու, քնելու ժամերը։ Դրանից մարդու աշխատունակությունը չափազանց մեծանում է։

Հետաքրքիր է իմանալ, թե ինչպես էին բաշխում իրենց ժամանակը մեծ գիտնականները, գրողները։

Վերցնենք, օրինակ, Լև Տոլստոյին։ Գրում էր նա վեպեր, վիպակներ, պատմվածքներ, այն, ինչ թվում է, ամբողջովին կախված է տրամադրությունից, այնինչ նրա ժամանակը խիստ սահմանված էր։ Առավոտները նա գրում էր՝ լարված աշխատում, մինչնույն բանը մի քանի անգամ փոխելով։ Գրողը չի կարող ապրել առանձնացած, նա միշտ պետք է տեսնի մարդկանց, դիտի նրանց, ուսումնասիրի։ Եվ Լ. Տոլստոյը առանձնացնում էր որոշակի ժամեր մարդկանց հետ շփվելու համար։ Ապա որոշակի ժամեր էր հատկացնում ընթերցանությանը և այլն։

Նույն ձևով էլ աշխատում էր Զոլան՝ ֆրանսիացի վիպասանը, որը գրել է վեպերի մի հըսկայական շարք, դրանց մեջ պատկերելով հասարակական տարբեր խավերի կյանքը կապիտալիզմի ժամանակ։ Զոլան վեր էր կենում առավոտյան ժամը վեցին և, ինչպես Տոլստոյը, գրում էր առավոտները, մնացած ժամանակը հատկացնում էր հասարակական այն խավերի ուսումնասիրությանը, որոնց իր գրքերում նկարագրում էր։

Վերցրեք մեծ երաժըշտագետների կյանքը, օրինակ՝ Բեթհովենի, և դուք կտեսնեք, թե նա ինչքա՜ն շատ ժամանակ էր հատկացնում դաշնամուր նվագելուն և թե ինչպես խիստ էր բաշխում իր ժամանակը։

Է՛լ ավելի խիստ են բաշխում իրենց ժամանակը բնագետները, բըժիշկները, գիտնականները, որոնք միկրոսկոպով աշխատում են լաբորատորիայում, հերձարանում։ Կարդացեք, օրինակ, Էդիսոնի, Լուի Պաստերի և այլ աչքի ընկնող մտավորականների աշխատանքի մասին։

Նշանավոր վիրաբույժ Կոխերը մինչև կյանքի վերջը ամենախիստ կերպով բաշխում էր իր օրը, ճիշտ ժամանակին պառկում էր քնելու, ամեն օր՝ որոշակի ժամի խաղում էր թենիս, որպեսզի պահպաներ ձեռքերի հաստատունությունը վիրահատության ժամանակ և այլն։

Այսպիսի օրինակներ դուք հազարներով կգըտնեք։ Ով ուզում է հասնել մեծ արդյունքների, պետք է ամենայն խնամքով խնայի և բաշխի իր ժամանակը։




ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Պատերազմն արդեն վերջացել էր: Մեկ-մեկ գյուղ էին վերադարձել ողջ մնացած հայրերը և ասես ամաչելով, որ ողջ են մնացել, առավոտ վաղ դաշտ էին գնում, ուշ գիշերով վերադառնում:

Մենք զոհվածների երեխաներ էինք: Մեր հայրերը հերոսաբար զոհվել էին հայրենիքի համար, և մենք հպարտանում էինք նրանցով: Սակայն բոլորը մեզ խղճում էին: Տատիկները տեսնելիս հոգոց էին հանում, հայրերը՝ շոյում գլուխներս, խառնում դատարկ գրպանները, մայրիկները՝ գլխաշորի ծայրով մաքրում արցունքները: Բոլորն աշխատում էին ինչ-որ ձևով թեթևացնել մեր վիշտը: Իսկ աշնանից մեզ պետք է հաց ու պանիր տային դպրոցում:

— Երանի ես էլ մեծ լինեի,— շուրթերը լպստելով ասում էր եղբայրս:

— Ոչինչ,— ասում էի,— կեսը կբերեմ քեզ:— Եվ մենք պառկում էինք ու երազում սպիտակ հացի համը:

Վերջապես եկավ սեպտեմբերը: Եղբայրս այդ առավոտ շատ վաղ արթնացավ, ինձ մինչև դպրոց ճանապարհեց:

Տարօրինակ հուզմունք կար դասարանում: Համեմատաբար քիչ էին այն երեխաները, որոնց հայրերը վերադարձել էին, և նրանք կարծես մտել էին նստարանների տակ, թաքնվել մեր հայացքներից:

Հնչեց երկար դասամիջոցի զանգը: Միանգամից դուրս թռանք: Բուֆետի պատուհանի առաջ երկար շարք էր գոյացել: Շարքի առջևում կանգնած բարձրահասակ տղան շփոթված նայում էր ափի մեջ բուրող թարմ հացին ու ասես չգիտեր ինչ անել: Լռություն էր: Հանկարծ նա սկսեց բարձր քրքջալ, թաքցրեց հացն ու դուրս վազեց: Ոչ ոք չէր շարժվում:

— Առա՛ջ եկեք, ի՞նչ եք շշմել,— ժպտաց բուֆետապանը,— եկե՛ք, մի՛ վախեցեք,— նորից կրկնեց նա՝ մաքրելով արցունքները:

Շարքն արագ սահեց առաջ: Բոլորն ստանալով իրենց բաժինները, ցրվեցին միջանցքում: Երկար ժամանակ այսպիսի իսկական, համով հաց չէինք կերել: Ես, թաքնվելով վրաս ուղղված հայացքներից, մոտեցա միջանցքի պատուհաններից մեկին ու դուրս նայելով սկսեցի ուտել: Իսկ կեսը խնամքով թաքցրի անդրավարտիքիս գրպանում՝ եղբորս համար:

Թիկունքիս զգում էի պատերի տակ շարված, քաղցից փայլող աչքերով տղաների ու աղջիկների հայացքները: Արագ-արագ կուլ էի տալիս, որպեսզի շուտ վերջանա այդ տառապանքը: Սակայն կուլ չէր գնում՝ կպչում, քարանում էր կոկորդիս մեջ:

Առանց նայելու զգացի, որ մեկը մոտեցավ ինձ:

— Այսօր ոչինչ չեմ կերել...— հազիվ լսելի շշնջաց նա:

Մարմնովս սարսուռ անցավ: Ձեռքս մնաց օդում կախված: Վերջին պատա-

որ չկարողացա տանել բերանս: Ետ շրջվեցի: Տղան արցունքոտ աչքերով ինձ էր նայում:

Ես լռությամբ գրպանիցս հանեցի եղբորս բաժին հացն ու դրեցի իր ափի մեջ: Նա վախից ետ փախցրեց այն:

— Վերցրո՛ւ,— ժպտալով ասացի:

Տղան անշարժ կանգնած, անթարթ նայում էր մեկնած ձեռքիս: Աչքերից կախված խոշոր կաթիլներն ընկան: Ես այլևս չկարողանալով դիմանալ, նրա ափի մեջ դրի հացի կտորն ու արագ հեռացա:

...Եղբայրս դպրոցի ճանապարհին կանգնած ինձ էր սպասում: Ես չգիտեի ինչ անել և գրկեցի նրան ու ասացի, որ վաղը իմ բաժինը լրիվ իր համար եմ բերելու:



# Դ Ե Պ Ք Ե Ր ,



ՍԱՄՎԵԼ ԹԱԴԵՎՈՍՅԱՆ,
Ապարանի № 1 դպր.,
9-րդ դաս.

## ՓՈՐՁՈՒԹՅՈՒՆ

Անցյալ տարի Ապարանում տեղադրեցին հեռուստատեսային հաղորդումների նոր աշտարակ։ Աշտարակը կանգնեցված էր մոտակա բարձր սարերից մեկի կատարին և շուտ-շուտ խափանվում էր։ Աշնանը հեշտ էր այնտեղ բարձրանալ, իսկ ձմռանը՝ անհամեմատ դժվար։

Ձմեռային ցրտաշունչ մի օր աշտարակը նորից խափանվել էր։ Մասնագետը գնացել էր վերանորոգելու։ Սակայն ճանապարհին սաստիկ բուք էր սկսվել, փակել տեսադաշտը և նա կորցրել էր ճամփան։ Տասներեքամյա մի տղա նկատել էր նրա սար բարձրանալը։ Տեսնելով, որ մասնագետն ուշանում է, գնացել էր փնտրելու։ Սարալանջին նրանք հանդիպել էին իրար։ Սակայն երկուսն էլ արդեն չէին կողմնորոշվել և երկար ժամանակ ձների մեջ թաղվելով, շնչահեղձ լինելով քայլել էին մինչև մութն ընկնելը։

Շուտով ուժասպառ եղած դպրոցականին մեծահասակը փաթաթել էր իր մուշտակի մեջ ու ինքն էլ պառկել կողքին։ Այսպես անցել էր բավականին ժամանակ։ Փոքրիկն սկսել էր մեղմանալ։ Մեծահասակը փորձել էր ոտքի կանգնել, բայց չէր կարողացել։ Նրա ձեռքն ու ոտքը ցրտահարվել էր։ Նա անասելի դժվարությամբ տղային հանել էր ձյան հաստ շերտի տակից և ուժերի գերլարումով քաշել մինչև ճանապարհը։ Մինչ այդ նրանց մոլորվելու մասին հայտնի էր դարձել բոլորին։ Անգամ ուղղաթիռ էին ուղարկել որոնելու, բայց ապարդյուն։ Եթե մեծահասակը կամքի ուժ և համառություն չցուցաբերեր, երկուսով էլ կսառչեին։ Սակայն փոքրիկի ներկայությունը նրան ուժ էր տվել, և կատարվել էր անհնարինը. կիսով չափ ցրտահարված մարդը փրկել էր իր համար անհանգստացած աշակերտի կյանքը։



ՄԻՔԱՅԵԼ ՍԱՅԱՄՅԱՆ,
Ծաղկաձորի շրջան,
Բերդ, № 2 դպր.,
9-րդ դաս.

## ՓՐԿՎԵՑ ՄԻ ԿՅԱՆՔ

1977 թվականի հուլիսի 28-ն էր։ Ընտանիքով հանգստանում էինք Օդեսայում։ Մի անգամ նավով զբոսանքի

Տպագրելով աշակերտական կոմերիտական ուսուցման դպրոցի տարբեր շրջաններից եկած բարձր դասարանցիների պատմած խիզախության, անձնազոհության ուշագրավ դեպքերի շարքը, առաջարկում ենք մեր ընթերցողներին գրել և ուղարկել իրենց հայտնի այլ ուշագրավ եղելություններ, որոնցից ամենից ավելի հետաքրքիրները տեղ կգտնեն ամսագրում:

էինք մեկնել: Արևոտ ու խաղաղ օր էր: Դելֆինները լողում էին նավի շուրջը և կարծես ինչ-որ բան ուզում հասկացնել ուղևորներին: Կեսօրից հետո եղանակը միանգամից փոխվեց: Երկնքում երևացին սև ու մռայլ ամպեր, չինչ ու թափանցիկ ջուրը գորշացավ և պղտորվեց, իսկ քիչ անց ընկրվեց տեղատարափ անձրև: Ահա այդ ժամանակ էլ լսվեց կանացի խելահեղ մի ճիչ: Չորս տարեկան երեխան ընկել էր ջուրն ու թպրտում էր կատաղի ալիքների մեջ: Երբ թվում էր, թե փոթորկվող ալիքները ուր որ է կուլ կտան խեղդվող մանկանը, երեք երիտասարդներ նետվեցին գալարվող ծովը: Գրեթե նույն պահին ծովում երևաց փոքր, բայց ճկուն ու արագագնաց մի նավակ և կապտած, ուշագնաց փոքրիկին հանեցին տախտակամած: Շուտով նա ուշքի եկավ և սկսեց լաց լինել: 15 րոպե անց մենք արդեն ծովափին էինք: Մայրը ամուր գրկել էր երեխային և ուրախությունից արտասվում էր:



●

ԳԱՐԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ,
*Մարտունու շրջան, գ. Զոլաքար, 9-րդ դաս.*

## ՍԱՆՁՎԵՑ ՄՈԼԵԳՆՈՂ ՀՐԴԵՀԸ

Անցած աշնանն էր: Բոլորը գնացել էին աշխատանքի, իսկ մենք դպրոցից տուն էինք վերադառնում, երբ նըկատեցինք, որ վառվում է մի տուն: Մինչև հրշեջ խումբը կհասներ, մենք ուսուցիչների հետ աշխատում էինք մարել հրդեհը: Մի մասը ջուր ու հող էր կրում, մյուսները դրանցով հանգցընում էին քամուց հետզհետե սաստկացող կրակը, իսկ ամենահամարձակները, անտեսելով վտանգը, նետվում էին ծխով ու կրակով լեցուն տունը և այնտեղից դուրս բերում արժեքավոր իրերը: Շուտով օգնության հասան նաև հրշեջները և համատեղ ջանքերով մարեցինք կրակը: Այս ամենը տևեց շատ կարճ, բայց այդ էլ բավական էր տեսնելու համար, թե վտանգի դեպքում ինչպիսի անձնազոհության կարող էր գնալ մեզնից յուրաքանչյուրը:

# Դ Ե Մ Ք Ե Ր



# ՎԵՐՋԱՊԵՍ ԵՍ ԴՊՐՈՑ ԵՄ ԳՆՈՒՄ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

## ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐՍ, ԵՍ ԵՎ ԴԱՍԵՐՍ

Դիլիջանի դպրոցում ես այն չէի, ինչ գյուղում: Իմ այդ նոր միջավայրում ես դրսևորեցի բնավորության այնպիսի գծեր, որոնք մինչ այդ ծանոթ չէին ո՛չ ինձ, ո՛չ ընկերներիս:

Գյուղում ազատ էի, չարաճճի, մանավանդ երբ մեր Անանուխի հետ էի լինում: Մեր մասին ասում էին. «Էս սարսաղներից մարդ չի դուրս գա...» Դիլիջանում դարձել էի քաշվող և ինքնամփոփ: Դիլիջանում ասպարեզը Ասքանազինն էր և Ամասիայինը. ես ոչինչ էի նրանց մոտ: Դիլիջանում շընորհքով հագնված, շնորհքով շարժուձևեր ունեցող աղջիկներ կային, որոնք լավ դաստիարակություն պիտի ընտացած լինեին իրենց կիրթ ընտանիքներում: Դե այդպիսիների մոտ ինչպե՞ս քեզ հավաք չպահես, կամ՝ կարո՞ղ ես Հասմիկ Մատինյանի մազերից քաշել, ինչպես Տերտերանց Նվարդի մազերն էի քաշքշում:

Մի ուրիշ բան: Մեր վերին թաղի հոտաղների շրջանում ես «ուսումնականի» անուն ունեի: Եվ ընկերներս հարգանքով էին խոսում ինձ հետ: Այսպիսի հասարակ բան. անասունները գնացել են արտի թարմ կանաչը վայելելու: Անթույլատրելի բան է, մեզանից մեկնումեկը պիտի վազի արտից դուրս քշի այդ ագահ խոտաճարակներին, քանի հանդապահ Ամպակը չի երևացել իր մեծ կոպալով ու երեքհարկանի հայհոյանքներով:

---

Սկիզբը՝ № 1, 2-ում:

Երբ վեր էի կենում, որ արտի կողմը գնամ, իմ ընկեր Գրիգորը հայացքով սաստում էր ինձ, այսինքն՝ «Մանր տեղըդ մի թեթևանա...» Իսկ եթե չհասկանալու էի դնում, իմ փափլիկ-հաստլիկ ընկեր Ակոփն էր առաջս կտրում ու իր խումար աչքը վրաս ոլորում.

— Բա մենք ի՞նչ բանի ենք, որ դու ես գնում:

Ու մահակն օդում ֆռռացնելով, վազում էր արտերը կողոպտող մեր եզների կողմը:

Այստեղ՝ Դիլիջանում, ես միանգամից զրկվել էի իմ այդ արտոնություններից: Ու դրանից ինքս իմ աչքում մի տեսակ ցածրացել էի:

Իսկ վարժապետնե՞րս:

Վարժապետներս էլ տարբեր էին: Սուրեն վարժապետը գյուղում հո շարունակ բարյացակամ էր իմ նկատմամբ: Ապացո՞ւյց, տետրիս մեջ նրա գրած «լավագույն» գնահատականները: Ասենք, այդ «լավագույնները» նա որպես զիջում չէր դնում ինձ: Իմ բարի վարժապետին երախտահատույց լինելու համար ես իրոք աշխատում էի լավագույն շարադրություններ ու թելադրություններ գրել:

Նույնիսկ այնպիսի պատկառելի մարդ, որպիսին գյուղի քահանան էր, սիրալիր էր հետս և կրոնի դասերին պարզ զգացվում էր համակրանքն իմ նկատմամբ: Թեև դա գալիս էր իմ հոր հետ ունեցած իր լավ հարաբերությունից, բայց դարձյալ այնպիսի մի բան էր, որ թևավորում էր ինձ:

Այստեղ ո՞վ գիտի, կամ ո՞ւմ պետքն է, թե ես մեր թաղի հոտաղների մեջ ուսումնականի անուն եմ հանել, կամ վեպեր եմ կարդում, կամ Սուրեն վարժապետը կարմիր թանաքով իմ տետրում «լավագույն» է գրում, որ Վարագա վանքապատկան դպրոցում ընդունված կարգով հինգի՞, թե՞ հինգ և խաչի ուժ ուներ:



Ինչի մասին էլ որ գրեր մեծանուն գրողը, մի զարմանալի թրթիռ, սեր ու նվիրում կար նրա խոսքում և խոսքն էլ նույնքան զարմանալիորեն կենդանի էր, հյութեղ ու բնական: Վախթանգ Անանյանի տաղանդը բնատուր էր, իր ողջ էությամբ նա բնությունից էր գալիս և իր ողջ ստեղծագործական կյանքում դեպի բնությունն էլ գնաց, անկրկնելի համ ու հոտ ունեցող գրչով ու զուտ անանյանական ներշնչանքով մեզ հասու դարձնելով իր տեսածին ու զգացածին:

Իսկ Վախթանգ Անանյանը շատ էր տեսնում ու խորն էր զգում՝ մի արտակարգ բարությամբ, որը շռայլորեն տարածվում էր ամեն ինչի վրա՝ լիներ դա մարդ, շնչավոր արարած, թե ծառ ու թուփ: Եվ այսօր, երբ մեր ամսագրում տպագրվում է նրա «Վերջապես ես դպրոց եմ գնում» վիպակը, զարմանալի ջերմությամբ շնչող մի գործ, չես կարողանում հավատալ, որ սիրելի գրողն արդեն մեզ հետ չէ:

Վախթանգ Անանյանի հրաշալի վեպերն ու պատմվածքները, որ վաղուց ի վեր դարձել են ոչ միայն հայ, այլև սովետական ու արտասահմանյան ընթերցողների սեփականությունը, եղել են ու կմնան մեր գրականության գանձարանում, առաջվա նման կշարունակեն իրենց առաքելությունը՝ բարու և ազնվության դպրոց լինելով նորանոր սերունդների համար:

— Ո՞րն է Ստեփան Անանյանը,— ցուցակին նայելով հարցնում է թվաբանության վարժապետ Ստեփան Մամյանը,— էն վերջին նստարանի ռանգը թռածը չի՞... Մո՛տ արի տեսնեմ: Ծնկի կարկատանին նայի՛ր, չեն կարո՞ղ շըներքով կարկատել շորերդ... Կավիճը վերցրո՛ւ և գրատախտակին գրի՛ր...

Ու թելադրում է թվաբանական մի խնդիր, որ գյուղի մեր դպրոցում ես «խաղ ու պարով» կլուծեի: Իսկ այստեղ փայտացել եմ գրատախտակի առաջ, միտքս կանգ է առել: Սխալ ասացի, կանգ չի առել, այլ ծնկանս անշըներքով կարկատանից գնում է դեպի Բավական Եսայանը, որի վրա իմ խելքով սիրահարված էի... Մռայլված գլուխը հակել է նստարանին, երևի անհարմար է զգում նայել ինձ և տեսնել նըվաստացումս: Ապա և կլորիկ երեսով ապագա այն տիրուհուն, որի դեմքին հեգնախառն ժպիտ է նշմարվում, իսկ իր եղբայր Ամասիան ցնծում է բերկրանքից: Մեկիկ-մեկիկ նայում եմ մտերիմ ընկերներիս՝ մռայլ են և ամոթահար: Իսկ իմ շեկ ընկեր Դողոնը միշտ թաց բեղատեղը փոխանակ թևքով սրբելու, վեր է քաշում, ինչպես անում են լացակումած մարդիկ:

— Հը՛, ի՞նչ ես փայտացել, պատասխանիր, է՞...

Ա՛յս միջավայրում, այսպիսի պայմաններում, հոգեկան ա՛յս վիճակում ի՞նչ պատասխանեմ, հասկացե՛լ եմ գրածս, որ պատասխանեմ:

Այդպես էին անցնում թվաբանության իմ դասերը Դիլիջանի դպրոցում: Առանձին սեր չունեի թվաբանության նկատմամբ, եղածն էլ այսպես մեռցրին: Եվ երբ առաջ անցանք և մեջտեղ եկան զանազան իքս-եր, ամեն ինչ խառնվեց գլխիս մեջ: Եվ ես չորս գործողությունից դենը չանցա, գլխումս մնաց միայն այն, ինչ սովորել էի մեր գյուղում, երրորդ բաժանմունքում: Ու, թեկուզ ամոթ է խոստովանելը, մինչև օրս էլ իմ իմացած թվաբանությունը չորս գործողությունից այն կողմ չի անցնում: Էլ չեմ խոսում հանրահաշվի, երկրաչափության և նման այլ բաների մասին, որոնց միայն անուններն եմ լսել, իրենց ինչ լինելու մասին գաղափար չունեմ:

Անցնենք մյուս առարկաներին:

## «ՎԱՐԺԱՊԵՏԸ ՇԱՇՎԵԼ Ա...»

Իմ իմացած երաժշտությունը այն սրտամորմոք բայաթիներն էին, որ մեր սարերը բարձրանալիս երգում էին թուրք քոչվորները.

Ա դաղլա՛ր, ա դաղլա՛ր,
Դաղլար հե՛յ...*

դիմում էին նրանք կանաչ հագնող սարերին և իրենց կարոտն էին արտահայտում իրենց անուշ ու մելամաղձոտ երգերով: Հոգուս մեջ ակոսել և իմ ամբողջ կյանքի ընթացքում այնտեղ անաղարտ մնացել են նաև օրիորդ Մարիամ Թոքմաջյանի երգերը, որ սովորեցնում էր նա մեզ անտառի որևէ բացատում, կանաչի վրա նստոտած կամ շուրջանակի պար բռնած:

Սրտիս մոտ էր նաև Շնորհալու «Առավոտ լուսոն», որ կարդում էի եկեղեցում: Ահա այն ժամանակվա իմ իմացած երգերի ողջ ցանկը: Բայց որ այդ երգերը նոտաներով ձայնագրված են եղել կամ կարող էին ձայնագրվել թղթի վրա, գաղափար չեմ ունեցել, որովհետև կյանքումս առհասարակ նոտաներ տեսած չկայի:

Դիլիջանի դպրոցում երաժշտության առաջին դասն էր: Ներս մտավ

* Ա՛յ սարեր, ա՛յ սարեր...

անձանոթ վարժապետը, մազերը խիստ երկար, ուղղակի ալիք-ալիք իջած ուսերին, ուստի և մեզ համար տարօրինակ տեսքով, որովհետև այն ժամանակ տղամարդիկ երկար մազ չէին թողնում:

— Արա՛, էս հո ասորի տերտեր է*,— ականջիս ասաց Դողոնը և թևքը բերանն առավ, որ ծիծաղը զսպի:

— Այսօրվանից ես ձեզ հետ երաժշտություն եմ անցնելու... Ազգանունս՝ Խաչատրյան,— ներկայացավ մեզ մեր դասատուն, որ միջահասակ, եռանդ արտահայտող չղուտ դեմքով մի մարդ էր:— Հիմա մենք գրատախտակի վրա կգրենք մի երգ իր նոտաներով և կսկըսենք երգել բոլորս միասին:

Ասաց, դեմքին թափված մազերը գլխի կտրուկ շարժումով նետեց ծոծրակն ու սկսեց անծանոթ նախշեր քաշել գրատախտակի վրա: Ապա բացատրեց.

— Սա սոլի բանալին է... սրանք էլ երգի նոտաներն են, ահա, կարդում եմ. դո, դո, լյա, լյա, սի, դո, դո, սոլ...

Մեկ-մեկ կարդաց այդ տարօրինակ նշանները, երգեցին ձայնով կարդաց և կարծես թե երգի նման մի բան ստացվեց:

— Սա մեր սովորելիք երգի առաջին տողն է: Հապա, դու, Անանյա՛ Անանյան, ձայնով կարդա՛ նոտաները:

Լավ ընտրություն արավ մեր վարժապետը. իր նուրբ և կիրթ դիմագծերից հասկացել էր, որ Անանուխը ավելի շուտ կըմբռնի նոտաները, քան քուրդ Ղազոյի թոռ Ռուբենը, որի գեղջուկ հոգին արտացոլված էր իր գեղջկական դեմքին:

Վարժապետի օգնությամբ մեր Ա-

* Այն ժամանակ գյուղից-գյուղ ասորի քահանաներ էին շրջում, որոնք երկար մազեր ունեին: Մեզ մոտ մեկի գլխի մազերը եթե երկարում էին չափից ավելի, նրա մասին ասում էին՝ «ոնց որ ասորի տերտեր ըլի...»

*Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 110-ԱՄՅԱԿԻՆ ԸՆԴԱՌԱՋ*

Երևանի Սիմակ Սահակյանի անվան № 73 դպրոցի Գ. Հակոբյանի անունը կրող պիոներական դրուժինան այս ուսումնական տարում բազմակողմանի աշխատանքներ է տարել «Պիոներները ամբողջ երկրի հավատարիմ են գործին Լենինի» երթի ուղղությամբ:

Ջոկատների կատարած գործերի մասին է պատմում ստորև տպագրվող հոդվածը:

## «ՄԵՆՔ ՊԱՏԱՆԻ ԼԵՆԻՆՅԱՆՆԵՐ ԵՆՔ»

Երբ դասղեկ Գոհար Խառատյանը Մ. Մաշտոցի անվան ջոկատի պիոներներին հանձնարարեց կարդալ «Պատմվածքներ Լենինի մասին» գիրքը, պարզվեց, որ Անահիտը և Գնելը արդեն ծանոթ են գրքին:

— Ուրեմն դո՛ւք էլ կկազմակերպեք քննարկումը,— առաջարկեց դասղեկը:

Երկու շաբաթվա ընթացքում գիրքը ձեռքից ձեռք անցավ, որից հետո ընթերցանության ժամերից մեկը նվիրվեց դրա քննարկմանը: Քննարկումը ցույց տվեց, որ գիրքը բոլորը կարդացել են հափշտակված, հմայվել են Վոլոդյա Ուլյանովի անհաշտվողականությամբ դեպի վատ արարքները, նրա աշխատասիրությամբ, պարտաճանաչությամբ ու կարգապահությամբ, հատկություններ, որ յուրաքանչյուրը պիտի ջանա պատվաստել իր մեջ:

Այս քննարկումից հետո ջոկատը շարունակեց հետևողականորեն ուսումնասիրել Վ. Ի. Լենինի կյանքն ու հեղափոխական գործունեությունը և աչ-

նանուխը կմկմալով կարդաց նոտաները, և մեզ համար անհայտությունից հետզհետե դուրս եկավ ինքը՝ երգը.

Կը-տի, կը-տի, մաս-տա-նը,
Կը-տիկը մը-տավ բոս-տա-նը...

Վա՜հ, էս ինչ լավ երգ է եղել, Դո-դո՜ն, ձենդ գլի՛... Սկսեցինք դասարանով երգել և զարմանքով տեսանք, որ մեր ուսուցիչը ձեռքի փայտիկը մեկ վեր է տանում, մեկ վար, մեկ աջ, մեկ ձախ...

*Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*



— Արա էս ի՞նչ բանի է, Դոդո՛ն,— հրեցի ես ընկերոջս արմունկը:

— Ծաշվել ա, ինչ բանի է,— ու համոզվելով, որ ուսուցիչը իրոք գժվեց, Դոդոնը ամբողջ հասակով մեկ կանգնեց տեղից ու ահով ձայն տվեց.

— Վարժապետը շաշվել ա... ձեռները կտրեցե՛ք...

Ձեռքի փայտիկը վերև՝ զենիթում մնաց, խլրտոցն ընկավ դասարանը...

Ի՞նչ բարի, ի՞նչ համբերատար մարդ էր երաժիշտ Խաչատրյանը: Արագ հասկացավ մեր զարմանքի պատճառը և շվարած դեմքին անմիջապես մի բարի ժպիտ փռվեց:

— Չեմ գժվել, երեխանե՛ր, այս փայտիկով չափ եմ տալիս... Որ նույն նոտան բոլորդ միասին արտասանեք... Որ մեկդ առաջ չընկնի, մեկդ ետ... Այսինքն, ամբողջ դասարանով երգեք միահամուռ, համերաշխ, մի մարդու նման...

Այսպես հանգիստ, պարզ ու հանգամանորեն բացատրության վրա իմ ընկերոջ շեկ դեմքը ամոթից վարդի գույն ստացավ, մանավանդ որ նոտագրությանը ծանոթ գյուղաքաղաքացիները ոչ թե ծիծաղում, այլ ուղղակի քրքջում էին մեզ՝ բոի սարեցիներիս վրա...

Ճիշտն ասած, այս առարկայից ես առաջադիմություն չունեցա. բնությունն ինձ այնքան ձայն էր տվել, որ կարողանում էի գութան քշելիս, հորիքի լծին նստած, բարակ ձայնով հորովել երգել: Դեհ, մեր գործի համար այդքանն էլ բավական էր: Իսկ նոտաներ գրելն ու դրանց ամեն մեկի նըրբերանգը ձայնով արտահայտելը ինձ համար ավելի դժվար էր, քան, ասենք, Պնդուկ սարից մի մեծ շալակ քեղ կամ դանձիլ տնքալով գյուղ տանելը:

քի ընկավ դրուժինայի «Մենք պատանի լենինյաններ ենք» նշանաբանով հավաքույթում:

## ԴԱՍ՝ ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹՅԱՆ

Այդ յուրատեսակ դասը, որը նվիրված է Մեծ հայրենականում ընկած հերոս կոմերիտականներին, անցկացրեցին Զ. Կոսմոդեմյանսկայայի անվան ջոկատի պիոներները:

Երբ բեմում բոցկլտաց անմահության կրակը, դահլիճում խորհրդավոր լռություն տիրեց: Մեկը մյուսի ետևից բեմ բարձրացան նրանք՝ հերոս կոմերիտականներ Զոյա Կոսմոդեմյանսկայան, Օլեգ Կոշևոյը, Լյուբա Շևցովան, Հունան Ավետիսյանը: Նրանց ձայնը հնչեց զոհվածների անունից, նրանց անունից, ովքեր ընկան հանուն հայրենիքի: Այդ ձայները մի անգամ ևս հիշեցրին, որ ոչ ոք չի մոռացվել, ոչինչ չի մոռացվել:

Հայրենասիրության դասն ամփոփեցին Մեծ հայրենականի վետերաններ Փայլակ Բարսեղյանը, Եվգենի Գնաչենկոն: Նրանք խաղաղ երկինք ու երջանիկ մանկություն ցանկացան ջոկատի պիոներներին:

## «ՈՉ ՄԻ ԵՏ ՄՆԱՑՈՂ ՔՈ ԿՈՂՔԻՆ»

Ն. Ստեփանյանի անվան ջոկատի դաստիարակչական ժամը նվիրված էր կիսամյակի ուսման առաջադիմության հարցին:

Ջոկատի պիոներներին ամենից առաջ ուրախացրեց այն, որ դասղեկ Սվետլանա Նահապետյանը գոհ էր ջոկատի առաջադիմությունից: Դասա-

Բայց քանի որ բնությունն ինքը լիքն է հազար ու մի երգերով՝ թռչունների ճլվլոց, ծառերի սոսափյուն, չոր եղեգի խշշոց, փայտփորիկի թմբկահարում, ուրեմն և ես չէի կարող անտարբեր լինել երգի նկատմամբ։ Ուղղակի հենց սկզբից խրտնեցի երգի՝ այդ աստվածային պարգևի անսովոր մատուցումից, ինչպես որ խրտնել էի թվաբանության մատուցման կոպիտ ձևից։

Այս այն ասպարեզն էր, ուր իր ամբողջ ընդունակություններով փայլում էր մեր անուշ ընկերուհին՝ Հրանուշ Զաքարյանը։ Եվ որովհետև մյուս առարկաների մեծ մասը չէր սիրում, կուզենար, որ բոլոր ժամերին երգեցողություն անցնեինք։

Մի փոքր անակնկալ ևս և փակենք երգի առարկայի հարցը։

Եթե ասեմ, որ կյանքումս ջութակ տեսած չկայի, հավատացեք։ Այնպես որ երբ հաջորդ դասին երգեցողության ուսուցիչը ներս մտավ ջութակը ձեռքին, Դոդոնին ցած ձայնով հարցրի.

— Ձեռքինն էն ի՞նչ է։

— Ո՞վ է իմանում... Կարող է շերեփացու է...

Ծիծաղեց, որից կարծեցի, թե լուրջ է ասում։

— Հա՛, երևի կոպիտ են արել*, համա հլա մեջը դուրս չեն տվել,— հաստատեցի ես։— Բա շերեփը վարժապետի ինչի՞ն է պետք...

— Խաշիլ են հարելու,— ասաց ու ծիծաղը թաքցնելու համար շեկ արտեվանունքները կկոցեց։

* Տաշտը, թիակը, շերեփը, գդալը և փայտեղեն այլ իրեր պատրաստելիս նախ անտառում տաշում-թեթևացնում էինք ու այդպես կոպիտ վիճակում բերում տուն ու շարունակում մշակել հանդում «կոպիտ արածը»։

— Խի՞, վարժապետներն էլ են խաշիլ ուտո՞ւմ...

— Որ ճանկներն ընկնի, իսկի կխընայե՞ն որ...

Այստեղ արդեն երկուսս էլ փոթկացինք։

— Բայց շատ տափակ է, վայ թե արաժան քաշելու շերեփ են սարքելու։

— Հը՞, իսկապե՞ս, երգի վարժապետը կովեր կունենա՞ որ...

Մինչ մենք աշխատում էինք լուծել այդ հանելուկը, վարժապետը մեր ասած շերեփացուն հանկարծ հենեց ուսին, նրա լայն մասը դեմ արավ այտին, կոթը բռնեց ու արձանացավ. սպասում էր, որ լռենք։ Եվ երբ լռեցինք, աջ ձեռքի համաչափ շարժումներին հետևեց ջութակի ձայնը. ձայն, որ ես կյանքումս լսում էի առաջին անգամ։ Այն ի՞նչ քնքուշ ելևէջներ էին, այն ի՞նչ հոգեպարար մեղեդի էր, որ առանց բառերի, առանց միտքը հասկանալու թափանցում էր իմ ներքին աշխարհի բոլոր անկյունները և այնտեղ առաջ բերում երանություն, կարոտ, հեկեկալու ցանկություն...

Գիշերն արխաջում, երբ Մելոնց Վահանը սրինգով նվագում էր թուրք քոչվորների նշանավոր չոբան-բայաթին, խարույկի մոտ պառկած գամփռները իրենց բրդոտ գլուխները դնում էին առաջին թաթերի վրա, աչքերը գցում այրվող-վառվող հովվի աչքերին ու վերանում էին մակաղած հոտից, բինայից, գայլերից, աշխարհից... Ահա հիմա էլ ես ձեռքերս ծալել բարձ եմ դարձրել նստարանին, գլուխս դրել նրանց վրա ու անքթիթ նայում եմ դասարանից ու աշխարհից վերացած նըվագածուին։ Յարաբ հասկացա՞վ, որ կարևորը դո-րե-մին չէ, որ դժվար եմ ըմբռնում, այլ երգի ոգին, որ գնաց

իրենով լցրեց էությունս և մնաց այնտեղ մինչև այսօր, մինչև կյանքիս ձմեռնամուտը:

Ի՞նչ երգ էր, որ այդպես ցնցեց ու միանգամից կլանեց ինձ: Խոսքը գրաբար էր, որից ես մի փոքր հասկանում էի: Ափսոս, որ ընկերներս չհասկացան: Աղոթքանման երգ էր, ուղղված առ Աստված.

Տե՜ե՜ր, կեցցո՛ զհայս,
Եվ արա՛ զնոսա՛ զպայծառս,
Տե՜ե՜ր, կեցցո՛ զհայս...*

Աղոթք ասացի՞: Ոչ, դա միայն աղոթք չէր, դա նաև աղաչանք էր մեր կործանվող ազգի համար: Դա նաև բողոք էր, թե ինչո՞ւ, բնության այդ ո՞ր անողոք օրենքի հիման վրա է, որ չպիտի ապրի այս ազգը: Իսկ վերջին տողը ուղղակի բարձր, հուսահատ ճիչ էր ուղղված Ամենակարողին. «Տե՜ե՜ր, կեցցո՛ զհայս...»

Ոչ մի երգ իմ կյանքում ինձ այնպես չի ցնցել, ինչպես դա. չէ՞ որ մեր գյուղը, Դիլիջանը, հարևան շեները լիքն էին մեծ Եղեռնից մազապուրծ այն թշվառներով, մի ամբողջ արդար ու աշխատավոր ժողովրդի բեկորներով ...Իսկ ես մոտ էի նրանց, զգում էի նրանց վիշտը, տեսել էի գիժ Մարեին և լսել նրա պարերգը...

Հիմա էլ, երբ հոգիս տնքում է աշխարհով մեկ ցրված-դադարգյուն մեր արյունակիցների ցավից, հիշում եմ այն հայրենասեր վարժապետի երգը ու ծերունական ձայնով դիմում եմ չեղյալ ամենակալին. «Տե՛ր, կեցցո՛ զհայս...»

Դիմում եմ որպես աղոթք, որպես ճիչ, որպես բողոք:

---

* Տեր, ապրեցրու հայերին և պայծառ դարձրու նրանց...

րանք հավատարիմ էր մնացել տարեսկզբին ընդունած «Ոչ մի ետ մնացող քո կողքին» նշանաբանին: Դասընկերները օգնել էին Մովսեսին, Մաղաքին, Սամվելին, Գեղեցիկին, վերջիններս էլ իրենց հերթին ամոթը չէին թողել ջոկատին:

Դաստիարակչական ժամին պիոներները պատմեցին նաև «Գիտելիքների աշխարհում» երթուղու գծով կատարված գործերի մասին, որպիսիք էին հանդիպումները գիտնականների հետ, խմբակների ստեղծումը, տարբեր գիտությունների վերաբերյալ կարդացված դասախոսությունները:

## ԵՐԵՎԱՆՅԱՆ ՄԵՏՐՈՅԻ ՀԱՄԱՐ

Հայրենական պատերազմի անմոռաց հերոս Զ. Պորտնովայի անվան ջոկատի պիոներները երևանյան մետրոյի մասին շատ անգամ էին լսել ռադիոյով, հեռուստացույցով հաղորդումներ դիտել, կարդացել թերթերում: Նրանք ցերեկույթ կազմակերպեցին նվիրված կոմերիտական հարվածային կառույցներին՝ ԲԱՄ-ին, ԿամԱԶ-ին, նաև Երևանյան մետրոյին: Հենց այստեղ առաջարկ եղավ մասնակցել Երևանյան մետրոյի կառուցմանը:

— Իսկ ինչպե՞ս,— մի պահ հարցական միմյանց նայեցին պիոներները:

— Մետաղի ջարդոն կհավաքենք մետրոյի համար,— հայտարարեց ջոկատի խորհրդի նախագահ Եսթեր Խաչատրյանը:

Բոլորը համաձայնեցին:

— Մեր հավաքած մետաղի ջարդոնով ձուլված ռելսերը կձգվեն հեռո՜ւ-հեռու...

Այսպես սկսվեց «Երևանյան մետրոյի համար» օպերացիան: Այսօր

# ՄԱՅՐ ԵՎ ՈՐԴԻ



ԱՆԱՀԻՏ ՊԱՐՍԱՄՅԱՆ

Նկ. ԱՆՈՒՇ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ

Երբ դեռ չէր եղել մեքենայի վթարն ու հայրիկը կար, նրանք Մարտի 8-ի տոնական օրը մեկնում էին քաղաքից դուրս: Հայրիկն անպայման որևէ նվեր էր բերած լինում մայրիկի համար:

Երրորդ տարին էր, որ հայրիկը չըկար: Գարնանը մայրիկը Ջորիկի համար, ուսումնական տարին հաջող փակելու և 4-րդից 5-րդ դասարան փոխադրվելու կապակցությամբ՝ գնեց մեծ լամպով հեծանիվ, հենց այնպիսին, ինչպիսին Ջորիկն ուզում էր: Թե հայրիկը տեսներ ինչպե՜ս է սուրում Ջորիկը... Բակում ամենից լավ նա է հեծանիվ քշում, բոլորը գիտեն:

Մոտենում էր Մարտի 8-ը: Ջորիկը երկար մտածեց, թե ինչ նվիրի մայրիկին այդ օրը: Աղջիկների համար դըժվար չէ, նրանք դեռ վաղուց տնարարության դասերին ասեղնագործում էին մայրիկների համար թաշկինակ, բաժակակալ, օձիք:

Նախաճաշի համար մայրիկի տված փողից Ջորիկը մաս-մաս ետ էր գցել և հիմա ամբողջ 5 ռուբլի ուներ: Ընկերոջ՝ Հրայրի հետ մտածեցին և որոշեցին: Հրայրն էլ 6 ռուբլի ուներ: Տոնի նախօրեին խանութներում երկար փնտրելուց հետո գնեցին. Հրայրը՝ օծանելիք, Ջորիկը՝ դիմափոշու տուփ, նախշազարդ մետաղից պատրաստված ու հայելիով: Դրան ավելացան ծաղիկները:

Ջորիկը տուփը պահեց, իսկ ծաղիկները սուզելով ջրով լի սափորի մեջ՝ տեղավորեց պատշգամբում, օլեանդրի մեծ ծաղկամանի ետևը, որ չերևա:

Առավոտյան նա արթնացավ մայրիկի ռտնաձայնից. գիտեր, որ նա, առօրյա գործերին անցնելուց առաջ, դուռը հիմա կբացի, որ նայի քնած որդուն, հայացքով գգվի նրան...

Ջորիկը շտապ վեր թռավ անկողնուց, անաղմուկ վազեց ու թաքնվեց դռան ետևը: Մայրիկը ներս մտավ, զարմացած նայեց շուրջը: Ջորիկը չըկար: Հենց այդ ժամանակ Ջորիկը թիկունքի կողմից փարվեց նրան.

— Այ թե որտե՞ղ ես,— ժպտաց մայրիկը ու ետ տալով մազափունջը որդու ճակատից, շոյեց նրան.— Տըղա՜ս...

Ջորիկը հասկացավ նրան, որքա՜ն գորովանք կար այդ մի հատիկ «տըղա՜ս»-ի մեջ... Նա հասկացավ, որ մայրիկը հիմա մտածում է հայրիկի մասին:

Ջորիկն զգաց, որ կրծքի տակ սիրտն անհանգիստ է բաբախում. ինքն էլ հայրիկի մասին էր մտածում:

— Սպասի՛ր, մա՛մ,— ու նա վազեց պատշգամբ, ներս բերեց ծաղիկները, դիմափոշու տուփը հանեց և.— Շնորհավորո՜ւմ եմ տոնդ, մայրի՛կ ջան...

Մայրիկը գրկեց նրան, և այդպես լուռ գրկված՝ երկուսն էլ ջանում էին ժպտալ, որ իրար մեջ չարթնացնեն վիշտը:

«Պիոներկառույց» շտաբի մատյանում ջոկատի անվան դիմաց արդեն գրանցվել է մեկ տոննայից ավելի մետաղի ջարդոն: Օպերացիան շարունակվում է:

## «ՀՈԿՏԵՄԲԵՐՈՎ ԾՆՎԱԾ ԱՐՎԵՍՏԸ»

Երբ դրուժինայի խորհուրդը ջոկատներին առաջարկեց Հայաստանի սովետականացման 60-ամյակի կապակցությամբ ներկայացնել իրենց աշխատանքների պլանը, Օլեգ Կոշևոյի անվան ջոկատի պիոներները ծրագրեցին «Հոկտեմբերով ծնված արվեստը» խորագրով հրատարակել պատի թերթերի շարք: Նրանց նախաձեռնությունը ընդունվեց, իսկ հայոց լեզվի և գրականության ուսուցչուհի Հայկուշ Սարգըսյանը խոստացավ օգնել: Ուսուցչուհու և պիոներների համատեղ աշխատանքի մասին դուք կիմանաք, երբ դպրոց մտնեք և դիտեք պատի թերթերը՝ նվիրված Ե. Չարենցին, Մ. Սարյանին, Արամ Խաչատրյանին, սովետահայ կինոյի ճանաչված արտիստներին: Դուք կհամոզվեք նաև, թե ջոկատի պիոներները իրենց որոնումների ընթացքում որքան շատ լրացուցիչ գիտելիքներ են ձեռք բերել «Գեղեցիկի աշխարհում» երթուղու ուղղությամբ: Հաճախ ջոկատի խորհրդի նախագահ Գոհարիկ Երիցյանը, Հռիփսիմեի ու Քնարիկի հետ կրտսեր պիոներների համար «Հոկտեմբերով ծնված արվեստը» թեմայով զըրույցներ են անցկացնում իրենց ստեղծած «Գեղեցիկի աշխարհում» անկյունում, պատասխանում փոքրիկներին հետաքրքրող հարցերին:

*ՍԱՄՎԵԼ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ*




*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 28. ԼԵԶՈՒ ԵՎ ԲՆԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ, ԿԱՄ՝ ԳՌԵՀԻԿ ՄԱՐԴՆ Է ԳՌԵՀԻԿ ԽՈՍՈՒՄ

Խոստովանեմ՝ ինձ վրա շատ ծանր է ազդում մարդկանց գռեհիկ, շփերթ, խենեշ լեզուն, չխոսելով այլևս հայհոյանքի մասին, որը, իմ կարծիքով, բնորոշում է մարդ արարածի ամենաստորին աստիճանը: Այն էլ, երբ լսում եմ պատանիների ու երիտասարդների շուրթերից, նրանց, ում հետ կապում ենք մեր երկրի, մեր ազգի հույսն ու ապագան:

Շատ եմ տխրում ու միտք անում՝ ի՞նչն է այս աղետալի երևույթի պատճառը. գռեհիկ հոգի՞ն է գռեհիկ խոսքեր ծնում, թե՞ հակառակը:

Այս հարցը, որ նման է հին առակին (ինչն է առաջ եղել՝ ձո՞ւն, թե՞ հավը), զբաղեցնում է լեզվագետներին, և նրանք չեն սխալվում գռեհիկ խոսվածքի ակունքը տեսնելով մարդու ներաշխարհում, նրա դաստիարակության մեջ: Եվ ասում են՝ եթե ուզում եք, որ մարդիկ կիրթ, մարդավայել խոսեն՝ նրանց հոգի՛ն պիտի դաստիարակեք, այլապես դուրս կգա, որ բուն պատճառը թողած, պայքարում ենք հետևանքի դեմ: Միշտ այնպես, ինչպես բժիշկը պետք է ոչ թե հիվանդի տաքության դեմ պայքարի՝ նրան տաքությունն իջեցնող հաբեր տալով, այլ դրա պատճառի՝ հիվանդության դեմ: Ինձ այս համեմատությունը թվում է տեղին՝ մի՞թե գռեհիկ խոսող, նույնիսկ սովորական ամեն խոսակցությունը հայհոյանքով «համեմող» մարդն էլ մի յուրատեսակ հիվանդ չէ, որ իր ախտով վարակում, թունավորում է և՛ իրեն, և՛ շրջապատը:

Չե՞ք կարծում, որ այն տղան, այն երիտասարդը, որ իսկապես սիրում է մորը, քրոջը, ընկերուհուն՝ իրեն թույլ չի տա հայհոյանքով խոսել, անհարմար կզգա, կամաչի, կկարմրի մինչև ականջները: Մարդավայել խոսելու համար մարդ պիտի դաստիարակություն ստանա՝ և՛ ընտանեկան (զուր չէ, որ գռեհիկ մարդուն ասում են՝ դու ընտանիքի երես չե՞ս տեսել), և՛ դպրոցական (զուր չէ, որ ասում են՝ դպրոցում քեզ դա՞ են սովորեցրել), և՛ ընկերական միջավայրի (այս էլ են ասում՝ դե՛, նրա ընկերն էլ սա կլինի): Այս ամենին պիտի ավելացնել՝ նաև գրական-արվեստագիտական դաստիարակությունը: Սա ի՞նչ է նշանակում:

Մի անգամ, մի տասը տարի առաջ, երբ բանաստեղծ Սերգեյ Նարովչատովը եկել էր Թումանյանի 100-ամյակի տոնակատարությանը, ես նրան հարցրի՝ Սերգեյ Սերգեևիչ, Դուք մի անգամ

գրել էիք, թե այն մարդը, որ անգիր գիտե Լերմոնտովի «Հրեշտակ» բանաստեղծությունը, վատ մարդ լինել չի կարող. մի՞թե այդքան վստահ եք պոեզիայի հրաշագործ ազդեցությանը: Նա այսպես պատասխանեց՝ գուցե ես չափազանցրել եմ, բայց որ պոեզիայի առաջին խնդիրը մարդկանց հոգին ազնըվացնելն է՝ ո՛չ մի կասկած, և ճշմարիտ պոեզիան կատարում է իր այդ դերը:

Իսկապես որ այդպես է: Ես էլ, իմ հերթին, գուցե և չափազանցության մեջ ընկնելով, կարող եմ ասել, որ այն պատանին կամ աղջիկը, որ անգիր գիտե, հասկանալո՛վ գիտե Պետրոս Դուրյանի «Լճակը», Վահան Տերյանի «Կարծես թե դարձել եմ ես տուն» կամ Իսահակյանի «Քույր իմ նազելի...» բանաստեղծությունները՝ գռեհիկ հոգի ունենալ չի կարող, ուստի և չի կարող կոպիտ ու գռեհիկ խոսել, չի՛ կարող հայհոյել: Միշտ այդպես էլ, վստահ եմ, նա, ով անգիր գիտե, հասկանալո՛վ գիտե Թումանյանի «Հայոց լեռներում» բանաստեղծությունը՝ չի կարող հայրենասեր չլինել:

Կա այսպիսի հասկացություն՝ «հուզական անդաստիարակություն»: Ի՞նչ բան է դա: Թեկուզ հենց այն, որ ներկայացման ամենահուզիչ տեղում մեկը քրքջում է: Չե՞ք նկատել, չե՞ք վրդովվել՝ բեմում ողբերգություն է կատարվում, դահլիճում քար լռություն է տիրում, մարդկանց աչքերը խոնավանում են հուզմունքից, մինչդեռ նա քրքջում է, իբրև թե՝ տեսե՛ք, ամենքը հուզվում են, իսկ ես բանի տեղ չեմ դնում, ես քաջ եմ, ծիծաղում եմ բոլորիդ վրա... Միշտ է, նա այսպես չի ասում, բայց դա է իր արարքի, այսպես այլանդակ ձևով սեփական ես-ը շեշտելու իմաստը: Շփերթ պահվածք, որ հուզական անդաստիարակության ուղղակի հետեվանքն է, ինչպես շփերթ խոսվածքը:

Դժբախտաբար շատ կան տղաներ ու աղջիկներ, որ չգիտեն, թե ինչպես կարող են իրենց տգեղացնել կամ գեղեցկացնել իրենց իսկ լեզվով, խոսելու ձևով: Եվ ավելի մեծ հաջողությամբ, քան հագուստով կամ աչքերը ներկելով: Քի՞չ է պատահում. տեսնում ես գեղեցկությամբ աչքի ընկնող, արտաքինով ոչինչ չխոստացող տղա, բայց հենց որ սկսում է խոսել կարգին ու խելացի՝ գեղեցկանում է աչքիդ, կարծես դիմագծերն էլ փոխվում են, տեսքն էլ, և նա դառնում է համակրելի: Հակառակն էլ է պատահում՝ սիրուն աչքունքով, կարգին հագած-կապած, գրավիչ տղա, բայց հենց որ բերանը բաց է անում, մի-երկու խոսք ասում՝ քիչ է մնում թողնես ու փախչես: Եվ ի՞նչն է զարմանալին՝ աչքիդ նրա կերպարանքն էլ է փոխվում, դառնում վանող ու հակակրելի: Այլես ի՞նչ զարմանք, որ այդպիսի տղան կամ աղջիկը, ինչքան էլ լավ արտաքին ունենան, սիրելի չեն դառնում իրենց միջավայրում, չեն հրապուրում իրենց ընկեր-ընկերուհիներին:

Ի՞նչ եք կարծում՝ թեկուզ ոչ գեղեցիկ, բայց բարեկիրթ դե՞մքն է լավ, թե՞ թեկուզև շատ գեղեցիկ, բայց անկիրթ, հոգու նրբության հետք չունեցող դեմքը: Իհարկե, ամենից լավն է, որ երկու երանին իրար հետ են: Բայց շատ հաճախ այդպես չի լինում: Եվ այս ընտրության մեջ, իհարկե, նախապատվությունը պիտի տալ թեկուզև ոչ գեղեցիկ, բայց մշակված, կիրթ դեմքին, որովհետև սա բովանդակություն է խոստանում, իսկ մյուսը լոկ ձևն է, որ շատ չանցած կարող է ձանձրացնել:

Ճիշտ է նկատված, որ մարդու դեմքն ու դիմագիծը մշակվում են նրա արարքների, մտածողության համեմատ, իսկ ոչինչ այնքան կապված չէ մտածողության հետ, որքան լեզուն:

Անգլիացի գրող Օսկար Ուայլդը մի հիանալի վեպ ունի՝ «Դորիան Գրեյի դիմանկարը»: Սրա հերոսն արտասովոր գեղեցկության տեր երիտասարդ է, բայց ունի արատավոր վարք: Ամեն մի վատ արարք խեղաթյուրում է նրա ոչ թե դեմքը, այլ դիմանկարը: Մի անգամ էլ, վեպի վերջում, երբ Գրեյը ետ է քաշում իր դիմանկարը ծածկող վարագույրը՝ տեսնում է սարսափով, թե ինչ ահավոր տեսք է ստացել իր դիմանկարը:

Իրոք որ, մարդու դեմքն իր ներաշխարհի արտացոլումն է, իսկ ներաշխարհը հենց այնպես չի տրվում, այլ ձևավորվում է միջավայրի, զգացմունքների, մտքերի, լեզվամտածողության ազդեցությամբ:

Հին խոսք է՝ մարդու մասին դատում են ըստ արարքների: Կարելի է ավելացնել՝ ըստ խոսվածքի ևս: Երբ մեկը խոսում է կեղտոտ, գռեհիկ լեզվով, չեն ասում՝ կեղտոտ է խոսում, ասում են՝ կեղտոտ մարդ է (վերջին տարիներս, չգիտես ինչու, այդ ածականը շատ է տարածվել մեզանում): Սա արդեն բնավորության գնահատական է: Այսքան սերտ կապի մեջ են լեզուն և բնավորությունը: Զուր չէ, որ Կ. Չուկովսկին գրել է՝ կոպիտ, գռեհիկ լեզուն «ոչ միայն զգացմունքների աղքատության նշան է, այլև դա իր հերթին աղքատացնում է մարդու զգացմունքները», իսկ գրող Լ. Կասիլն այն համոզման էր, որ «Եթե վաղ թե ուշ մարդ չազատվի լեզվական կեղտից, վերջիվերջո դա կկեղտոտի նրա հոգին ևս»:

Եթե այդպես է,— իսկ դա իրոք այդպես է,— ապա պիտի խուսափենք դրանից, ինչպես աղետաբեր հիվանդությունից: Ավելին՝ պայքարենք դրա դեմ ոչ միայն մեր մեջ, այլև մեր միջավայրում: Մի՛շտ և ամենուրե՛ք: Արժե դրանով մտահոգվել, չէ՞ որ խոսքը վերաբերում է մեր և՛ լեզվի, և՛ մտքերի ու զգացմունքների գեղեցկությանը:

Այս տողերը գրելիս մտքովս անցավ՝ չլինի՞ թե իմ ընթերցողները կարծեն, թե այսքան դեմ լինելով լեզվական անկարգությանը, խենեշ ու շփերթ լեզվին՝ ես կողմնակից եմ դրա հակադրությանը՝ կանոնների սահմաններից դուրս չեկող զտված ու թորված լեզվին: Շատ կուզենայի, որ ինձ այդպես չհասկանային, որովհետև այդ ծայրահեղությունը նույնպես վնաս է բերում և նույնքան վանող է ու անցանկալի: Ահա ինչու մեր հաջորդ զրույցի նյութը կլինի այն, թե ինչպես մարդու բնավորությունը կարող է փչացնել նաև չոր ու ցամաք, անհոտ ու անհամ, այսպես կոչված՝ «գրասենյակային լեզուն»:



ԱՐՁԱԳԱՆՔՈՒՄ ԵՆ ՏՊԱԳՐՎԱԾԻՆ

«ԱՆՀԱՇՏՈՒԹՅՈՒՆ ԴԱՍԱՐԱՆՈՒՄ... ԻՆՉՈ՞Ւ»

# ՄԵՆՔ ՀԱՇՏ ՈՒ ՀԱՄԵՐԱՇԽ ԵՆՔ

Մեր դասարանում 11 տղա և 20 աղջիկ կա: Բոլորս էլ հաշտ ու համերաշխ ենք միմյանց հետ: Տղաները շատ քաղաքավարի են վերաբերվում աղջիկներին: Առաջին քառորդին դասարանում կար մեկ վատ սովորող և երկու գերազանցիկ, իսկ այժմ ունենք՝ 6 գերազանցիկ և 16 հարվածային: Մենք բոլորս ձգտում ենք ավելի լավ սովորել:

Մեր դասարանը դպրոցի լավագույն դասարաններից է: Հավաքույթներին մասնակցում ենք ամբողջ ջոկատով, միասին ենք մտածում ջոկատի անելիքների մասին: Երբ որևէ մեկը վատ է սովորում կամ ետ մնում, մենք ոչ թե ծաղրում ենք նրան, այլ՝ տխրում և հնարավորին չափ օգնում: Այդ է պատճառը, որ հաշտ ու համերաշխ ենք և բարձր է մեր դասարանի առաջադիմությունը:

*ՄԱՐԻԱՄ ՄԱՄԱՋԱՆՅԱՆ*

*Լենինական,*

*№ 20 դպր., 6-րդ դաս.*

# ՎԵՐՋԸ Ե՞ՐԲ Է ԳԱԼՈՒ՝ ՉԳԻՏԵՆՔ

Մեր դասարանի տղաների ու աղջիկների փոխհարաբերությունը խիստ լարված է: Ամեն ինչ ընկրվեց նրանից, որ մեր դասարանի մի խումբ տղաներ փախան դասերից: Մենք՝ աղջիկներով, որոշեցինք այդ մասին տեղեկացնել դասղեկին: Տղաները դրանից խիստ վիրավորվեցին, և մեր միջև եղած ընկերական կապը խզվեց: Երբ դասը պատմելիս սխալվում ենք, նրանք ծիծաղում են մեզ վրա, իսկ դասամիջոցին ասում. «Դասերը պատմել չեն կարողանում, իսկ դավաճանելու համար մի հատ են»:

Երբ հայտնեցինք նրանց փախուստի մասին, բոլորովին չէինք մտածում, թե այդքան հիվանդագին ազդեցություն կունենա տղաների վրա մեր արածը: Այժմ տհաճ փոխհարաբերություն է տիրում դասարանում, որի վերջը ե՞րբ է գալու, ինչպե՞ս, չգիտենք:

*ՍՈՒՍԱՆՆԱ Մ.*

*Աշտարակ, 7-րդ դաս.*

**ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ** — Սիրելի՛ ընթերցողներ, ցանկալի կլինի, եթե այս նամակը դուք քննեք ձեր ջոկատներում և գրեք մեզ, թե ինչպիսի կարծիքներ արտահայտեցին ձեր դասարանցիները այս աղջիկների ու տղաների բռնած դիրքի վերաբերյալ և ինչ կարելի է անել հիշյալ դասարանի համերաշխությունը վերականգնելու համար:




«Լուսաբեր»-ից • «Լուսաբեր»-ից

# ԾՈՒՅԼ ԱՂՋԻԿԸ

Բուրդն ի՞նչ կանեմ, կեղտոտ է,
Բամբակը կորիզոտ է:
Մետաքս պիտի, որ մանեմ,
Մաստակ պիտի, որ ծամեմ,
Կտերը տիտիկ անեմ,
Անցնողին մտիկ անեմ.
Ուտե՞մ, խմե՞մ,
Մթնի, քնեմ:

# ՈՒԼՈՒՆՔ

Գարունը եկավ ամպերով,
Ամպերը եկան անձրևով.
Անձրևը տանեմ արտին տամ,
Արտը ինձ ցորեն տա.
Ցորենը տանեմ ջաղացին տամ,
Ջաղացը ինձ ալյուր տա.
Ալյուրը տանեմ տաշտին տամ,
Տաշտը ինձ խմոր տա.
Խմորը տանեմ թոնրին տամ,
Թոնիրը ինձ հաց տա.
Հացը տանեմ բոշին տամ,
Բոշեն ինձ ուլունք տա.
Ուլունքը տանեմ նանիս տամ,
Նանս ինձ ծեծի, ծեծի,
Տանից քշի, դուրս անի:



# ՀԱԶԱՐ ՈՒ ՄԻ ՀԱՐՑ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ

1. Ո՞րտեղ է գտնվում Սովետական Միության ամենամեծ ջրվեժը:

2. Ինչպե՞ս է կոչվում Աֆրիկայի այն լիճը, որի ջրերը հանկարծ եռում են և լիճը վերածվում է մի հսկայական ու յուրօրինակ եռացող կաթսայի:

Ո՞րն է այդ երևույթի պատճառը:

3. Երկրագնդի ո՞ր մասերում են գտնվում թանկարժեք մորթի ունեցող ծովաշների (կոտիկ) երեք հոտը:

4. ՍՍՀՄ-ի տարածքում որտե՞ղ են գտնվում «Սպիտակ» անունը կրող ծովը, լիճը և երեք գետերը:

5. Ալժիրի Սիդի-Բել-Աբբես քաղաքի մոտ գտնվում է թանաքի լիճը, որի

# ԷՍ ՍԵՂԱՆՆ ՈՒ ԷՆ ՍԵՂԱՆԸ

Հացի ժամանակ Երվանդին ու Հրանտին միշտ նստեցնում էին պստիկների սեղանին:

— Հայրի՛կ,— ասավ մի օր Երվանդը,— ինչո՞ւ մեզ էլ էդ սեղանին չես նստեցնում:

— Երբ բեղեր ունենաս, դու էլ մեզ հետ էս սեղանին կնստես,— պատասխանեց հայրը կատակով:

Այդ միջոցին մոտեցավ տան կատուն ու չանգռելով Երվանդի տոտերը՝ իր բաժինն էր խնդրում:

— Կորի՛, փիսո՛, էն սեղանը,— բարկացավ Երվանդը,— դու աՀագին բեղեր ունես:

ջրերը, իրոք հաջողությամբ փոխարինում են թանաքին: Ինչո՞վ բացատրել այդ տարօրինակ լճի գոյությունը:

6. Ո՞րտեղ է համեմատաբար տաք՝ Հյուսիսայի՞ն, թե՞ Հարավային բևեռում: Ինչո՞ւ:

7. Քարտեզների հավաքածուն ինչո՞ւ է կոչվում «ատլաս»:

8. Երկրագնդի ո՞ր մասում կառուցված տնակի չորս պատերն էլ հարավ կնայեն:

9. Սովետական Միության ո՞ր արդյունաբերական կենտրոնում է, որ բանվորներն աշխատանքի գնալիս անցնում են Եվրոպայից Ասիա:

10. Աշխարհի ո՞ր գետն էր դատապարտվել մահվան և ինչպե՞ս վերակենդանացավ:

(Պատասխանները տես՝ 44 էջում:)

ՕԼԻՄՊԻԱԴԱ-80

* * *

Սպորտային սկավառակի տոհմաբանությունն ունի ռազմական ծագում: Բանն այն է, որ Հին Հունաստանում զինվորները, պաշարելով քաղաքը, փայտե կամ քարե սկավառակի վրա վերջնագրի պայմանները գրելով նետում էին պաշարված քաղաքի պարիսպներից ներս:

Աստիճանաբար սկավառակը կորցրեց իր ռազմական նշանակությունը և դարձավ սպորտային գործիք: Քարե, բրոնզե կամ երկաթե սկավառակը, որ օգտագործում էին հին հույները, կշռում էր 3—6 կգ: Նետումը կատարվում էր ոչ մեծ բարձրությունից: Այն նետում էին կամ հորիզոնական ուղղությամբ, կամ վերև: Վերջին դեպքում հաղթող էր ճանաչվում նա, ում սկավառակը ավելի ուշ էր գետին ընկնում:

* * *

XXII օլիմպիական խաղերը կտևեն 16 օր (բացման և փակման օրերը ներառյալ): Այս ժամկետը կարելի է «դասական» համարել, քանի որ 1932 թվականից սկսած, խաղերն անց են կացվել 16—18 օրվա ընթացքում, իսկ Տոկիոյի օլիմպիադայի կազմակերպիչներին «բավարարեց» և 15 օրը:

Մոսկովյան օլիմպիադայի ժամկետները լիովին համընկնում են Հելսինկիում կայացած XV օլիմպիական խաղերի ժամկետներին: Այդ բացատրվում է երկու օլիմպիական քաղաքների կլիմայական պայմանների նմանությամբ:

*ՀԱՄԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ*

# ՉՐԽԿԱՆ ԲԶԵԶՆԵՐԸ



Լիլիթը վերցրեց այգու մկրատը, պարտեզ գնաց: Անցավ ցողաթաթախ թփերի միջով, ուր նորահարսի պես գլուխներն էին խոնարհել սպիտակ վարդերը, հիացմունքով շնչեց նրանց բուրմունքը, ապա մոտեցավ կողքի թփերին, այնտեղ, սեփական գեղեցկությամբ արբած՝ վառվում էին կարմիր վարդերն իրենց բոլոր երանգներով: Նրանց բուրմունքն արդեն զգացվում էր պարտեզի մյուս ծայրից: Բայց Լիլիթին ամենից շատ դուր էին գալիս թերթիկների ծայրերն աննշան վարդագունած դեղին վարդերը՝ խոշոր-խոշոր, նուրբ ու հմայիչ:

Լիլիթը չէր կարողանում անտարբեր անցնել ասես կանչող այդ դեղինդեղին վարդերի կողքից:

Բոլոր վարդերը բարձր էին Լիլիթից: Նա կանգնեց ոտքերի ծայրին, ձեռքի մկրատով կտրեց հինգ

Լիլիթը վախեցած (խոշոր բզեզը շարունակում էր բարկացած բզզալ) թափ տվեց վարդերը, բզեզներն ընկան գետնին, բոլորն էլ մեջքի վրա և մի պահ մնացին անշարժ: Լիլիթը հանկարծ խղճաց նրանց՝ մեռա՞ն...

Նա խոնարհվեց միջատների վրա, որպեսզի որևէ կերպ օգնի շրջվեն, երբ բզեզներից մեկը վեր ցատկեց և ընկնելով պտույտ գործեց ու «չըը՛խկ» ուղղվեց, մյուսը նույնպես վեր թռավ և նորից ընկնելով պտույտ գործեց ու նորից «չըը՛խկ» ուղղվեց: Այդպես և մյուսները:

Լիլիթը կանգնած դեռ նայում էր, իսկ բզեզները բզզալով թռան գնացին դեպի մյուս վարդերը:

Այդ ինչպե՞ս նրանք ուղղվեցին, մտածում էր Լիլիթը:

Այո, փոքրիկ Լիլիթ, այդ բզեզների կրծքի առաջնամասը հատուկ ելուստով մտած է կրծքի միջին մասի մեջ: Երբ բզեզները մեջքի վրա են գտնվում, նրանք նախակրծքով կտրուկ շարժում են կատարում այդ ելուստի օգնությամբ և վեր ցատկում, ապա, ընկնելիս պտույտ են գործում և նորից շուռ գալիս ոտքերի վրա: Այդ ժամանակ էլ նրանք արձակում են «չրխկոցի» նման ձայն և դրա համար էլ կոչվում են չըրխկան բզեզներ:



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



[illegible], ուղղվեց՝ ցանկացավ սոտիկից զմայլվել նրանցով, երբ ամենաճմայիչի մեջ տեսավ խոշոր-խոշոր մի բզեզ: Լիլիթն սկզբում ցանկացավ վերցնել բզեզը վարդի միջից, հետո վախեցավ, որ հանկարծ կկծի: Մկրատի ծայրով թեթևակի հրեց բզեզին, որպեսզի ցած գցի, բայց մետաղը հավանաբար ցավ պատճառեց միջատին, նա բարկացավ և զայրացած բզզալով սկսեց պտտվել Լիլիթի գ·խավերևը:

Լիլիթը ետ քաշվեց և համոզվելու համար, որ այլ բզեզներ չկան, նորից նայեց ձեռքի վարդերին և խիստ զարմացավ՝ մյուս վարդերի մեջ էլ մեկական բզեզ երևաց. նրանց, հավանաբար, խոշոր բզեզի բզզոցն էր դուրս կանչել կիսաբաց թերթիկների միջից:







# ՕԼԻՄՊԻԱԿԱՆ ԽԱՂԵՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

## *ԴԻԱԳՈՐԻԴԱՍՆԵՐԻ ԸՆՏԱՆԻՔԻ ԼԵԳԵՆԴԸ*

Հին, շատ հին ժամանակ Հռոդոս կղզում ապրում էր հզոր Դիագորիդասը, որը բազմիցս հաղթող էր ճանաչվել բռնցքամարտի մրցումներում: Օլիմպիական դափնեպսակով է պարգևատրվում նաև Դիագորիդասի եղբայր Ակուսիլոսը: Ապա իրենց հոր և հորեղբոր ճանապարհով են գնում նաև որդիները: Անցնում են տարիներ: Հասակ են առնում Դիագորիդասի թոռները՝ Էվկլիոսն ու Պեյսիդորասը: Սրանք նույնպես շարունակում են իրենց ընտանիքի հաղթանակը օլիմպիական խաղերում և անպարտելի հռչակվում բռնցքամարտի մրցումներում:

Ասում են, Պեյսեդորասի մայրը՝ Կալլիպատերը (նրան կոչում էին նաև Ֆերենիկա), չվստահելով մարզիչ-ուսուցիչներին, ինքն էր պարապում որդու հետ, նրան հըմտացնելով բռնցքամարտի մեջ: Կալլիպատերը ոչ թե ցանկանում էր, որ որդին պարզապես ուժեղ և գեղեցիկ լինի, այլև այնքան հմտանա բռնցքամարտի արվեստի մեջ, որ կարողանա մասնակցել օլիմպիական հանդեսներին: Անցնում է բավական ժամանակ, և ահա գալիս է Ոլիմպոս մեկնելու ժամանակը:

Չկասկածելով իրենց հաջողությանը, Կալլիպատերը ցանկանում է ինչ գնով էլ ուզում է լինի, տեսնել որդու հաղթանակը: Սակայն օլիմպիական հանդեսներին մասնակցում էին միայն տղամարդիկ, և համաձայն հնագույն օրենքների, այն կինը, որը կհամարձակվեր մուտք գործել ստադիոն, կդատապարտվեր մահվան:

Կալլիպատերը, անտեսում է այդ օրենքը, հագնում է տղամարդու հագուստ և խառնվելով մարզիչների խմբին, մտնում է ստադիոն:

Նրա որդին, հազարավոր հույների առջև, մեկը մյուսի ետևից պարտության է մատնում բոլոր հինգ մրցակիցներին: Այն մտքից, որ խաղերի փակման արարողության ժամանակ իր որդու՝ Պեյսեդորասի գլուխը պսակվելու է դափնե ճյուղով, մորը մոռացնել է տալիս ահավոր վտանգը: Նա նետվում է առաջ, որպեսզի գրկի որդուն... և բոլորը նկատում են, որ իրենց առջև կանգնածը կին է:

Համաձայն օրենքի, Կալլիպատերին պետք է վայր նետեին ժայռից, սակայն մրցավարները իրենց մեջ ուժ չեն գըտնում այդ անելու, քանի որ իրենց առջև կանգնած էր օլիմպիական չեմպիոնի դուստրը, օլիմպիական դափնեկիրների քույրը և օլիմպիական նորընծա չեմպիոնի մայրը: Զայրացած ու հուզված ստադիոնը աստիճանաբար հանդարտվում է և Կալլիպատերը մնում է կենդանի:

Սակայն այդ օրից ըսկսած բոլոր մարզիչները մրցումների ողջ ընթացքում պետք է գըտնըվեին հատուկ արգելա-

փակոցում: Նրանք այնտեղ կանգնում էին բոլորովին մերկ և խուզված մազերով, որպեսզի այլևս ոչ մի կին հնարավորություն չունենար կրկնել Կալլիպատերի արարքը...

## ՉԳՐՎԱԾ ՕՐԵՆՔՆԵՐ

Ամեն անգամ, երբ բոցավառվում է օլիմպիական ջահը, խաղերն անցկացնող երկրի լավագույն մարզիկը մասնակիցների անունից երդվում է, որ իրենք կպայքարեն ազնվորեն և բարձր կպահեն իրենց երկրների մարզական պատիվը:

Այժմ դժվար է ասել. հնում նման երդում եղել է, թե ոչ, սակայն եղել է այսպիսի խորիմաստ ասացվածք. «Ոլիմպոսում հաղթանակի են հասնում ոչ թե փողով, այլ արագ ոտքերով և ամուր կոփված մարմնով»:

Հույները որքան շռայլ էին չեմպիոնների մեծարման մեջ (նրանց արձանները կանգնեցնում էին հայրենի քաղաքներում, նրանց ցմահ ազատում էին հարկերից և այլ պատիվների էին արժանացնում), նույնքան էլ դաժան էին, եթե մարզիկները օլիմպիական դափնու էին ձգտում անազնիվ ճանապարհով:

Նրանք արհամարհում էին այն մարզիկներին, որոնք փորձում էին իրենց մարզական արվեստը օգտագործել հարըստանալու նպատակով:

218-րդ օլիմպիական խաղերում տուգանում են ոմն Ապոլլոնի, որը ուշացել էր խաղերից, պատճառաբանելով, թե նավին համընթաց քամի չի եղել, որպեսզի ժամանակին Եգիպտոսից Ոլիմպոս հասներ: Սակայն, շուտով հայտնի է դառնում, որ նրա ուշացման պատճառը ոչ թե համընթաց քամի չլինելն է եղել, այլ այն, որ մարզիկը փողով հանդես է եկել Հունաստանի մեկ այլ նահանգում:

Համընդհանուր արհամարհանքի և դրամական խոշոր տուգանքի են ենթարկվում 98-րդ օլիմպիադայի բռնցքամարտի մրցաշարի չորս մասնակիցներ: Նրանցից Էվփոլեսը կաշառք է տալիս մրցակցին՝ Ագետորեսին, որպեսզի նա պարտվի: Ապա՝ Պրիտանիսին և, վերջապես, Ֆորմինիսին՝ նախորդ օլիմպիական խաղերի հաղթողին: Պատժվում են բոլոր չորս մասնակիցները: Առաջինը անազնիվ ճանապարհով դափնեպսակին տիրելու, իսկ մյուս երեքը կաշառք վերցնելու համար:

*ՀՈՎՀԱՆՆԵՍ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ*

## ՕԼԻՄՊԻԱԴԱ-80

● Ավելի քան հարյուր տարի առաջ գնդակախաղի բրիտանացի սիրահարները գժտվեցին: Խաղի կանոնները մշակելիս նրանք չկարողացան ընդհանուր լեզու գտնել. թույլ տալ գընդակին հարվածել միայն ոտքո՞վ, թե՞ ձեռքով նույնպես: Ձեռքով խաղի հակառակորդները այն ժամանակ ստեղծեցին ֆուտբոլը, իսկ կողմնակիցները Ռեգբի քաղաքում հիմք դրեցին հետագայում քաղաքի անունն ստացած խաղին:

● Նախքան երկրաչափության իր հռչակավոր հայտնագործությունները կատարելը, Պյութագորասը հռչակվել է որպես մարզիկ: Հայտնի է, որ հին օլիմպիական խաղերի ծրագրի մեջ մտնող բռնցքամարտում ապագա մեծ մաթեմատիկոսը իր հավասարը չի ունեցել:

● Ձևավոր չմշկասահքն այնքան էլ երիտասարդ սպորտաձև չէ: Առաջին պաշտոնական մրցումներն անց են կացվել ավելի քան հարյուր տարի առաջ: Բայց դեռ գերմանացի մեծ գրող Յոհան Վոլֆգանգ Գյոթեն (1749—1832) բոլորին հիացնում էր իր չմշկելու վարպետությամբ:

# Ո՞Վ ԷՐ ՍՊԱՆԵԼ ՀԱՇՎԱՊԱՀԻՆ

*ՊԱՎԵԼ ԲԻԼԵՎՍԿԻ*
*8-րդ դաս. աշակերտ*



Դպրոցում սկսվել էր մանկավարժական խորհրդի նիստը: Քննարկում էին առաջին կիսամյակի նախնական արդյունքները: Ֆիզիկայի դասատուն պայուսակից հանեց մի դարս տետրեր, ջոկեց ու դուրս քաշեց դրանցից մեկը:

— Ահա՛,— թափահարեց նա:— Ահա՛ 7-րդ Բ դասարանի աշակերտ Պյոտր Սեդովի տետրը: Դե տեսեք ինձ ի՞նչ է հանձնել վերջին ստուգողական աշխատանքի փոխարեն: Սատանա՞ն գիտե, թե ի՛նչ:

— Հապա տեսնե՛նք, եթե կարելի է,— հնչեց պատմության ուսուցչի ձայնը: — Այսպե՞ս, այսպե՞ս...— Եվ պատմության ուսուցիչն սկսեց թերթել տետրը:— Ծա՞տ հետաքրքիր է, շա՞տ... Ա՞յ դու...

— Այդ ի՞նչ է որ,— հարցրեց դիրեկտորը:

— Ես, կարծես, գլխի եմ ընկնում, թե բանն ինչ է,— ասաց քիմիայի ուսուցչուհին և եկավ նստեց պատմաբանի կողքին:— Կարծես թե շարունակությունն ինձ մոտ է:

Ուսուցիչներն իրար անցան.

— Ինձ մոտ չորրո՞րդ գլուխն է:

— Իսկ ինձ մոտ՝ հի՞նգերորդը:

— Իսկ ինձ մոտ՝ նախավերջի՞նը:

— Իսկ վե՞րջն ում մոտ է,— միաժամանակ բացականչեցին մի քանիսը:

Բանն այն է, որ թույլ էր տրված անհավատալի մի արարք. Պետկա Սեղովը, որի մականունը «Գրող» էր, բոլոր առարկաների ստուգողականների փոխարեն, ուսուցիչներին հանձնել էր «Հաշվապահ Թյուֆյակիձեի մահը» դետեկտիվ վեպի առանձին գլուխները, վեպ, որը նա գրել էր ամբողջ երկու քառորդի ընթացքում: Եվ մանկխորհուրդն ահա մաս առ մաս կարդում էր այդ ստեղծագործությունը: Բայց երբ ուսուցիչները հավաքեցին բոլոր տետրերը, այնտեղ պակասում էր վերջին գլուխը: Դետեկտիվն ընդհատվում էր ամենահետաքրքիր տեղում:

Հարկ եղավ շտապ մանկխորհուրդ կանչել Պյոտր Սեղովին:

— Դու քեզ այդ ինչպե՞ս ես պահում, Սե՛դով,— նրան դիմեց դիրեկտորը:— Դու, ստուգողականների փոխարեն, այդ ի՞նչ ես հանձնել ուսուցիչներին: Դա, ախր, ափեղցփեղություն է: Այնտեղ նույնիսկ հայտնի չէ, թե ով էր սպանել հաշվապահ Թյուֆյակիձեին:

Պետկան ժպտաց: Նա ամեն ինչ ճշգրտորեն հաշվի էր առել և հանդարտ ասաց.

— Ներեցեք, որ ես իմ գիտելիքները շարադրել եմ այդքան անսովոր գեղարվեստական ձևով: Բայց խնդրում եմ ձեզ ուշադրություն դարձնել, որ քիմիայի տետրում գրել եմ այն թույների փորմուլները, որ չարամիտները պատրաստել էին Թյուֆյակիձեի համար, ֆիզիկայի տետրում ես տալիս եմ սեյֆի էլեկտրաազդանշանիչի սխեման, պատմության տետրում՝ այն մեծ մարդկանց ծննդյան ու մահվան թվականները, որոնց նմանվել էր ցանկանում սպանվածը...

— Մենք գնահատել ենք քո գիտելիքները,— մեղմորեն ասաց դիրեկտորը:—Իսկ հիմա, Պե՛տյա, ասա՛ մեզ, համենայն դեպս, ո՞վ էր սպանել հաշվապահ Թյուֆյակիձեին:

Ուսուցիչները հետաքրքրված նայեցին աշակերտին:

—Ծրագրավորող Տո՞ւմբոչկին,— մեկեն ասաց Պետկան և հպարտորեն նայեց շուրջը՝ ուսուցիչներին:

Լռություն տիրեց:

— Այդ այդպե՞ս...— վերջապես ասաց ֆիզիկայի ուսուցիչը,— բայց ախր, Պե՛տյա, էլեկտրաազդանշանիչի սխեմայում շփոթված են անոդն ու կատոդը...

— Ի միջի այլոց, Նապոլեոնը ծնվել է 1769 թվին, ոչ թե՝ 1789, ինչպես պնդում է Թյուֆյակիձեն: Եվ հաշվապահի ազգանունն էլ ինձ դուր չի գալիս,— ասաց պատմաբանը:

— Իսկ Տումբոչկինը, ի՞նչ է, ավելի՞ լավ է,— ասաց քիմիայի ուսուցչուհին: — Բացի այդ, Սե՛դով, թույների փորմուլաներից այնքան էլ գլուխ չես հանում...

Մանկխորհրդի նիստից հետո Պետկան տուն վազեց համարյա լացակումած: Նա մի կողմ նետեց իրեն վերադարձված տետրերը, դուրս քաշեց մի դարս մաքուր թուղթ և սկսեց ուրվագըծել իր նոր՝ «Գոհարները շողշողում են ոչ այնտեղ» վերնագրով դետեկտիվը: Նա գրում էր, արցունքները կուլ տալով, և ինքնիրեն խոսում.

— Անիծվա՞ծ լինեմ, թե նրանք իմանան՝ գոհարներն ով է գողացել, մինչև որ հաջորդ քառորդին ինձ բարձր թվանըշաններ չդնեն:

*Թարգմ. ՀԱՄՈ ՀԱՐՑԱՆԻ*



ՕՍԿԱՐ ՈՒԱՅԼԴ (1856—1900)

## ԵՐԿԻՄԱՍՏ ԽՈՐՀՈՒՐԴ

Մի երիտասարդ երգչուհի Օսկար Ուայլդին գանգատվում էր, թե մամուլն անուշադիր է իր նկատմամբ։

— Քննադատները մի բառ անգամ չեն գրել իմ ձայնի մասին։ Ինձ շրջապատել են լռության դավադրությամբ։ Չգիտեմ՝ ինչ անեմ։

— Միացեք նրա՛նց, — խորհուրդ տվեց Օսկար Ուայլդը։



ԷԴՄՈՆ ՌՈՍՏԱՆ (1868—1918)

## ԻՆՉՊԵՍ ԱՐԹՆԱՑՆԵԼ ՀԱՆԴԻՍԱՏԵՍԻՆ

Ֆրանսիացի նշանավոր բանաստեղծ ու թատերագիր Ռոստանը ունկընդրելով ապաշնորհ մի փաստաբանի սրտաճմլիկ դրամայի ընթերցանությունը, ննջեց։

Վերջապես լսվեց այնքան ցանկալի «վարագույր» բառը։

— Ուրեմն ձեր հերոսուհին թո՞ւյն խմեց,— բազմանշանակ հարցրեց Ռոստանը,— բայց ես թույնը կփոխարինեի ատրճանակով։ Պատկերացրեք կրակոցն ավելի լավ է։

— Ինչո՞ւ,— տարակուսեց փաստաբանը։

— Իսկ ի՞նչ անել, որ հանդիսականներն արթնանան։



ԷՖՐԱԻՄ ԳՈՏՀՈԼԴ ԼԵՍՍԻՆԳ (1722—1781)

## ՆԱԹԱՆԸ ԵՎ ԻՄԱՍՏՈՒՆԸ

Գերմանական փոքրիկ մի թատրոնի տնօրենը, որ հայտնի էր իր պարծենկոտությամբ, մի խումբ դերասանների և Լեսսինգի ներկայությամբ պատմում էր այն մեծ հաջողության մասին, որ իբր ունեցել է մեծ թատերգուի «Նաթան Իմաստուն» դրամատիկ պոեմի իր բեմադրությունը։

—Ո՞վ էր խաղում Նաթանի դերը,— հարցրեց Լեսսինգը։

— Ես,— ինքնաբավական պատասխանեց տնօրենը։

— Իսկ Իմաստունի՞ դերը...

Ընդհանուր քրքիջը, որ հաջորդեց Լեսսինգի այս հարցին, տնօրենին հարկադրեց շտապ հեռանալ սենյակից։



ԲՐԱՆԻՍԼԱՎ ՆՈՒՇԻՉ (1864—1838)

## ԸՍՏ ՆՈՒՇԻՉԻ

Սերբական նշանավոր թատերագիր Բրանիսլավ Նուշիչը մի անգամ այսպես բացատրեց, թե ինչ է հեռագիրը.

— Պատկերացրեք մի մեծ կատու, որի պոչը Զագրեբում է, իսկ գլուխը՝ Բելգրադում: Զագրեբում նրա պոչը քաշում են, իսկ Բելգրադում նա մլավում է:

— Լավ,— ասացին նրան,— իսկ ի՞նչ է ռադիոն:

— Նույն բանը, միայն առանց կատվի:



ՋՈՆՆԱԹԱՆ ՍՎԻՖԹ (1667—1745)

## ԵՐԲ ԴԵՐԵՐԸ ՓՈԽՎՈՒՄ ԵՆ

Սվիֆթի բարեկամներից մեկը ծառայի միջոցով մի մեծ ձուկ ուղարկեց նրան: Տեղ հասնելով՝ ծառան բացեց գրողի աշխատասենյակի դուռն ու ձուկը հատակին դնելով, բացականչեց.

— Ահա՛, իմ տերը ձեզ ձո՜ւկ է ուղարկել:

— Երիտասա՛րդ,— ասաց Սվիֆթը,— թույլ տվեք ձեզ սովորեցնել վարվելակերպի կանոնները: Նստեք իմ բազկաթոռին, իսկ ես ձեզ կցուցադրեմ, թե ինչպես պետք է վարվել նման դեպքերում:

Ծառան գրավեց Սվիֆթի տեղը, իսկ մեծ երգիծաբանը գնաց դռան մոտ, ապա առաջ եկավ մինչև սեղանն ու հարգալիր խոնարհումով ասաց.

— Պարո՛ն, իմ տերը ողջություն է հղում ձեզ... Նա հուսով է, որ դուք քաջառողջ եք և խնդրում է ընդունել այս փոքրիկ նվերը...

— Հիրավի՛,— ուրախացած բացականչեց երիտասարդ ծառան,— երախտագիտությունս հայտնեք ձեր տիրոջը և վերցրեք այս դրամն ու խմեք իմ ողջության կենացը:

Սվիֆթը ծիծաղեց և առատաձեռն վարձատրեց հնարամիտ երիտասարդին:



ՌԻՉԱՐԴ ԲՐԻՆՍԼԻ ՇԵՐԻԴԱՆ (1751—1816)

## ԱԿԱՄԱ՞, ԹԵ՞ ՄՏԱԾՎԱԾ

Անգլիացի նշանավոր թատերագիր Շերիդանը իր կատակերգություններից մեկում կծու ակնարկ էր արել երկրի պառլամենտի հասցեին: Որպես պատիժ՝ նա պետք է գար պառլամենտ և ծնկաչոք ներողություն հայցեր:

Թատերագիրը ենթարկվեց դատավճռին: Նա եկավ պառլամենտ, դահլիճում բոլորի առաջ ծնկի իջավ, բայց ոտքի կանգնելիս, թափ տվեց ծնկների փոշին և բացականչեց.

— Աստվա՜ծ իմ, որքան կեղտոտ է այստեղ:

*Հավաքեց ԱՆՈՒՇԱՎԱՆ ԴԵՎԿԱՆՑԸ*

ԵՓՐԱՏ ՍԵՎՔԱՐԵՑԻ

## ՁՅՈՒՆՆ Է ԼԱԼԻՍ

Սառցի լուլան
Դարձել կուլա,
Ջուր է թափում հողին,
Կծկվել է
Ծառի ճյուղին
Ձյունն արևի շողից:

Ձյունը լալիս,
Ձայն է տալիս.
— Փրկեցե՛ք ինձ, ընկա՜...—
Իսկ արևը
Ծիծաղում է՝
— Քեզ փրկություն չկա:

## Գարնանային պատկեր

Սարալանջին, ձյունի միջից
Երկինք նայող աչքեր կան ջինջ:
Երկնի կապույտ ամպի միջից
Երկիր նայող աստղեր կան ջինջ:

Իսկ մեջտեղում հող ու շողի
Ծովանում է կապույտ մի լիճ,
Եվ գարունն է լցնում այնտեղ
Թռչունների ճախրանք ու ճիչ:

ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀՈՎՆԱԹԱՆ

## Ո՞րն ես սիրում

— Ծովը ի՞նչ է, Ալիսա՛:
— Ծովը ջուր է, շատ մեծ ջուր:
— Ի՞նչ է լիճը, դե ասա՛:
— Լիճն էլ ծով է, բայց՝ պուճուր:
— Ո՞րն ես սիրում, Ալիսա՛:
— Ես սիրում եմ պաղ աղբյուր:

# ԳՅՈՒՄՐԵՑՈՒ ՊԱՏՎԱՍԻՐՈՒԹՅԱՄԲ

«Գյումրի» ֆուտբոլային թիմը կազմավորվել է 1976 թվականին Լենինականի № 6 բնակշահագործման գրասենյակին կից: Պատանիների մարզիչն է № 17 դպրոցի ֆիզկուլտուրայի ուսուցիչ Հայկ Ավետիսյանը: 1977 թ. նրա սաները «Կաշվե գնդակ» ակումբի համամիութենական մրցումներում առաջին տեղը գրավեցին: Անցած ամռանը «Գյումրին» հանդես էր գալիս 12—13 տարեկանների մրցաշարում, որն անցկացվեց Կույբիշև քաղաքում:

Շիրակցի պատանիները եզրափակիչ յոթ խաղերում մրցակիցների դարպասն անցկացրին 21 գնդակ՝ բաց թողնելով միայն մեկը:

Մրցաշարի խաղերից ամենալարվածը, թերևս, եզրափակիչն էր, որտեղ «Գյումրին» մրցում էր նույնպես լավ խաղով աչքի ընկած, մյուս ենթախմբի հաղթող Կիրովաբադի «Քյափազ» թիմի հետ:

Հայ պատանիները եզրափակիչն սկսեցին սուր գրոհներով և ունեցան գոլային լավ հնարավորություններ: «Զարյա» ստադիոնում հավաքված հազարավոր մարզասերներ վանկարկում էին «Գյումրիի» անունը: Լենինականցիները 5:3 հաշվով, դարձան «Կաշվե գնդակ» մրցաշարի հաղթողներ: Բացի գավաթից, շիրակցի պատանիները տիրացան «Ամենատեխնիկական թիմի», «Ամենաշատ գոլեր խփողի» համար սահմանված մրցանակներին: Հատուկ մրցանակների արժանացան նաև դարպասապահ Արտեմ Մարտիրոսյանը և կիսապաշտպան Հայկ Կարոսյանը:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*



# ԱՐՈՒՍ ԱՍՐՅԱՆ



«Քաջ Նազար» — Ուստիան



«Հանրապետության նախագահը» — Մամիկ



Ամուսնու՝ Վարդան Աճեմյանի և որդու՝ Ալեքսանդր Աճեմյանի հետ

1919 թվականին, երբ նշվում էր մեծ բանաստեղծ Հովհ. Թումանյանի ծննդյան 50-ամյակը, Թիֆլիսի Քրմոյան դպրոցի աշակերտուհի Արուսը՝ 15—16-ամյա դեռատի մի աղջիկ, բեմ է բարձրանում Անուշի դերերգով: Ներկայացմանը ներկա բանաստեղծը ըզգացված աղջկա շնորհալի խաղից, համբուրում է նրա ճակատը: Մեծ բանաստեղծի համբույրը առաջին բարեմաղթանքն էր դեպի մեծ բեմ տանող ճանապարհին: Տասնամյակներ են անցել այդ օրից, ստեղծագործ ծանրաբեռ տարիներ, որոնցով իմաստավորված է արդեն ՍՍՀՄ ժողովրդական դերասանուհի Արուս Ասրյանի բեմական կյանքը:

Արդեն 40 տարի է, ինչ տաղանդավոր դերասանուհին խաղում է Սունդուկյանի անվան մայր թատրոնում: Այստեղ է նա անձնավորել հայ, ռուս և եվրոպական դասական ու ժամանակակից դրամատուրգիայի հերոսուհիների խոր հոգեբանական կերպարները՝ Դիանա, Ռնցովա, Ջեսսի, Զաբուևովա, Գայանե, Նուբար, Մամիկ և այլն: Առանձին պետք է նշել Ասրյանի կերպավորած տատիկը Վ. Սարոյանի «Իմ սիրտը լեռներում է» պիեսում. գաղթական կնոջ դրամատիզմով լցված կերպարի փայլուն կատարման համար այս անգամ նրա ճակատը համբուրեց մեծերից մեկ ուրիշը. պիեսի հեղինակ Վիլյամ Սարոյանը:

Եվ դու, պատանի բարեկամ, աշխատիր մեծ դերասանուհուն տեսնել բեմում, որպեսզի անմիջականորեն հասու լինես դերասանուհու հմայիչ արվեստին:

ԳԵՎՈՐԳ ԱԲԱՋՅԱՆ

Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ

Վ. ԳԵՐԲԱՋԵՎՍԿԻ

# ԱՐԿՏԻԿԱՅԻ ՓՈՔՐԻԿ ՏԵՐԸ

Բնության պահպանության կենտրոնական լաբորատորիայի արշավախումբը սպիտակ արջերին ուսումնասիրելու նպատակով գիտարշավի մեկնեց Վրանգելի կղզին:

Վրանգելի կղզին գտնվում է Հյուսիսային սառուցյալ օվկիանոսում, Չուկոտկայից համարյա երկու հարյուր կիլոմետր դեպի հյուսիս: Նրա ափերը ողողում են երկու՝ Արևելասիբիրյան և Չուկոտյան ծովերի ջրերը: Ասենք, երբ մենք կղզի հասանք, ոչ մի ծով էլ չտեսանք, չնայած ծովափին էինք ապրում: Մարտ ամսին երեսուն աստիճան ցրտեր էին, և ծովերը պատած էին ծանր սառցաշերտերով:

Այս կղզին սպիտակ արջերի ծննդատուն են կոչում: Խոր աշնանը էգ արջերը տասնյակներով լքում են օվկիանոսի սառույցները, ափ են դուրս գալիս և շարժվում դեպի լեռները: Ձյունալանջերին նրանք իրենց համար որջեր են պատրաստում: Հոկտեմբեր-նոյեմբեր ամիսներին պառկում են որջերում, իսկ բքերը դրանց վրա հսկայական ձնակույտեր են առաջացնում: Կարծես թե կարելի է քնել, թաթը ծծելով, ինչպես ենթադրում են, մինչև գարուն: Բայց էգ արջերի կյանքը ձյան տակ անհանգիստ է: Դեկտեմբերին կամ հունվարին որջում արդեն ձագուկներ են երևում: Որպես կանոն՝ երկուսը: Երբեմն՝ մեկը, երբեմն՝ երեքը: Մայր արջը մեծ հոգսերի մեջ է ընկնում, չնայած ձագուկները փոքրիկ են, յուրաքանչյուրը կես կիլոգրամ քաշով:

Մարտ ամսին արջուկն արդեն տասը, նույնիսկ ավելի կիլոգրամ է կշռում: Նա պետք է շատ և արագ ուժեր հավաքի, մի քանի շաբաթ հետո մայրը կփորի-կբացի որջը և ձագուկներին բաց օվկիանոսի սառույցները կտանի: Իսկ կյանքն այստեղ դաժան է՝ արկտիկական: Ստիպված կլինի շատ քայլել, մայր արջի ետևից մագլցել սառցակույտերի վրայով:

Մեր արշավախմբին հետաքրքրում էին սպիտակ արջերի ձնե թաքստոցը, նրա կառուցվածքը, արջերի քաշը, երկարությունը, ճանկերի և ժանիքների մեծությունը, տարիքը... Մենք նույնիսկ արջի ոչ մեծ պոչի երկարությունն էինք պատրաստվում չափել:

Բայց ինչպե՞ս որջ թափանցել: Ինչպե՞ս կշռել մի քանի ցենտներ քաշ ունեցող մայր արջին: Դա գիշատիչ է, այն էլ՝ ամենամեծը երկրի վրա: Թաթի մի հարվածով նա հեշտությամբ փշրում է ծովաշան գանգը: Ճանկերով պատառոտում է ծովացուլի կաշին, կաշի, որը կտոր-կտոր անել, ինչպես մենք փորձեցինք, կացնով էլ հնարավոր չէ: Իսկ ժանիքնե՞րը... Դրանցից ավելի լավ է հեռու մնալ:

Արջի որջը մենք կարող էինք մտնել: Բավա-



կան էր արջաընտանիքի բնակարանը գտնել և ձյունը քանդել: Իսկ հետո՞: Հետո մենք հույսներըս դրել էինք մեր ոտքերի արագության և թռչող շպրիցների վրա: Մենք մի հրացան ունեինք, որից դեղով լըցված շպրիցներ էինք կըրակում: Կրակելուց տասատասնհինգ րոպե հետո դեղը սկսում էր ներգործել, մայր արջը քնում էր: Դրանից հետո, կարելի է վերադառնալ, փորել որջը, չափել, կըշռել ու նշան դնել մոր ու արջուկների վրա:

Իհարկե, միշտ չէ, որ ամեն ինչ հարթ է գնում, ինչպես ասում են, ըստ սցենարի:

Յուրաքանչյուր որջի մոտ մենք տարբեր միջոցներ էինք գործադրում: Եթե որջը խորն էր, առաստաղը՝ հաստ, աշխատում էինք անցքը լցնել ձյունով: Դրանից

հետո կարելի էր մոտենալ, բարձրանալ ուղղակի առաստաղի վրա և թիակով նեղ ճեղք բանալ: Այդ ճեղքից շպրիցով կարելի է կրակել մայր արջի վրա: Իսկ եթե արջաբնտանիքի գլխավերևում առաստաղը բարակ է, ոչ մի դեպքում որջին մոտենալ չի կարելի: Առաստաղը կարող է փլվել և մարդը կընկնի ուղղակի արջի գիրկը, իսկ մեզնից ոչ ոք, բնական է, դա չէր ուզում: Անհրաժեշտ էր որևէ ձևով մայրիկին դուրս հրապուրել: Ստիպել նրան դուրս թռչել ձյան տակից: Եվ մինչ նա կհասցներ շուրջը դիտել, կրակել դեղով շպրիցը:

Այսօր մեր առջև հենց բարակ առաստաղով որջ էր:

Բոլորն արդեն իրենց տեղերում են: Կտրտված ձյան կտորներից մի փոքրիկ բլրիկ է գոյացել: «Ավելի մեծ կտորներ ընտրեք»,—ասաց արշավախմբի պետը,—այլապես նա դրանց վրա ուշադրություն չի դարձնի»:

Ահա ծանր ձնե աղյուսը ձեռներումս է: Ամեն մեկս ուզում ենք ուղղակի անցքին հարվածել: «Պահապաննե՛ր, ուշադրությո՛ւն»: Հրացանի երկու փող ուղղված էին որջի վրա: «Շպրըտե՛ք»:

Ձյան կտորն աղեղնաձև իջնում է ուղիղ լանջի վրա սևին տվող անցքին: Հիանալի է: Ուրեմն այսօր մեզ հաջողությունն է ուղեկցելու: Բայց մենք դեռ չենք հասցրել ուրախանալ մեր սնայպերական հարվածով. որջից դուրս է թռչում հսկա էգ արջը և առանց կանգ առնելու նետվում է մեզ վրա: «Փախե՛ք»,— լսվում է ճիչը: Նրանք, ովքեր որջի մոտ էին կանգնած, սարսափանքով ցած են նետվում, առանց ճանապարհը տեսնելու, ուշադրություն չդարձնելով սուր քարերին. կյանքը պատառոտված շալվարից թանկ արժե:

Բայց մայր արջը շուտով կանգնում է: Դունչը բավական մռայլ է: Երախով լանջից մի քիչ ձյուն է վերցնում: Մորթը բոլորովին էլ սպիտակ չէ, ավելի շուտ դեղին է, համարյա լիմոնագույն: Թաթերի վրայի բուրդը փնջերով ցած է կախվել: Մի քանի անգամ մռընչում է, գլուխը իջեցնում: «Գնա՛, գնա՛, մենք քեզ ոչ մի վատ բան չենք անի»: Նա կարծես թե լսում է, մեջքով մեզ դառնում և վեր է բարձրանում: Որջի մոտ նորից շուռ է գալիս: Տես է, ինչ դժգոհն է: Ցած իջիր:

Եվ հանկարծ... Տեղի է ունենում մի բան, որ ամենևին չէինք նախատեսել: Մայր արջը կռանում է որջի անցքի վրա, որտեղից դուրս էր ցատկել, թեթև հոտ է քաշում, դոփդոփում է տեղում: Հետո էլի է նայում մեր կողմը և հեռանում է որջից, լեռնային մի դարավանդից մյուսն անցնելով: Ի՞նչ պատահեց: Որոշել է զբոսնե՞լ: Բայց ոչ, անընդհատ վերև է բարձրանում՝ վշտոտ գըլուխը թափահարելով: Վերադարձի՛ր, աղավնյա՛կ, ի՞նչ ես ամեն բան լուրջ ընդունում:

Լեռնալանջով վեր բարձրացանք: Մոտեցանք անցքին: Մեզնից երկուսին թողեցինք հրացաններով հսկելու՝ հանկարծ արջը չվերադառնա՞: Մյուսներս հերթով գլուխներս ներս ենք մտցնում անցքից: Շուտով բոլորս որջում ենք: Արջուկը արդեն խլրտում է պարկի մեջ, վնգստում է անընդհատ:

Էգ արջը, ինչպես պնդում են գիտնականները, շատ բան է հաշվի առնում որջի համար տեղ փնտրելիս: Ե՛վ լանջի թեքությունը (որպեսզի մուտքը հիմնական ապրելատեղից ցածր լինի), և՛ քարերի մոտիկությունը, և՛, ինչպես օդերևութաբանները են արտահայտվում, տեղումները:

Որջերը մեր կենաաբանների պատմեցին նաև, որ հաճախ են հանդիպում էգ արջ-ճարտարապետներ: Նրանք բավական լավ զարգացած երևակայություն, կառուցելու յուրօրինակ մեթոդներ ունեն: Մի մայր արջ իր ապագա ընտանիքի համար տասը մետրից ավելի երկար միջանցք էր փորել: Մյուսն իր որջը կառուցել էր երկու պարուրաձև օղակների նման, կարծես նպատակ է ունեցել երկհարկանի տուն ունենալ: Այս բոլորն, իհարկե, կենդանու քմահաճույք չէ: Էգ արջն իր կառուցողական գործունեության մեջ հաշվենկատ է, ավելորդ աշխատանքի չի ձգտում՝ ինչ է թե իր տունը զարդարի կամ նրան յուրօրինակ տեսք տա: Հարմար, տաք, հանգիստ, ահա այն սկզբունքները, որոնցով նա առաջնորդվում է:



Համա թե դժվար էր երեքով արջուկին բռնելը. մեկը բռնել է առջևի թաթերը, մյուսը՝ ետևի, երրորդը՝ գլուխը: Երեք առողջ տղամարդիկ: Միևնույն է, արջուկը պոկվում է, հասցնում է մեկին կծել, թաթով հարվածել: Սուր և երկար ճանկիկներ ունի: Ատամներն էլ պակասը չեն: Վերջապես սեղմում ենք նրան ձյանը: Զգուշորեն ծակում ենք ականջները, նշանը դնում: Նրա ականջները կոճիկանման են, նա չպետք է որ ցավ զգա, այնինչ ճղղում է խոճկորի պես, թափ է տալիս իրեն, շուռումուռ է գալիս... Մի լավ քրտնեցինք: Հետաքրքիր է իմանալ՝ ինչքա՞ն է կշռում մկաններն այդ գունդը: Հագցնում ենք ձագուկի վզին վզնոցը, կշեռքի կեռից կախում, և ահա նա ճոճվում է օդում, թաթերով ծիծաղելի շարժումներ անում: Տասներկուսից քիչ ավելի է կշռում. ուժեղ և կծող կիլոգրամներ:

Արջուկը դարձյալ ուսապարկի մեջ է, իսկ մենք քննարկում ենք այն հարցը, թե ինչու մայրը լքեց իր ձագուկին: Չըլսված, չտեսնված բան է: Սովորաբար էգ արջերը ձագերին պաշտպանում են մինչև վերջին շունչը: Վերջիվերջո հանգում ենք այսպիսի եզրակացության՝ էգ արջը երբևէ գործ է ունեցել մարդկանց հետ, ըստ երևույթին նրան վերք են հաս-

ցրրել որսագողերը: Իսկ հիմա արջը, տեսնելով հրացաններով մարդկանց, որոշեց փրկվել: Մենք ամեն կերպ ուզում էինք մտնել արջի դրության մեջ, բայց և միաժամանակ դատապարտում էինք նրան: Դա ի՞նչ մայր է, որ լքեց իր միակ ձագուկին:

Իսկ ձագուկին ինչ-որ տեղ պետք է տեղավորել: Որջում նրան թողնել չի կարելի՝ կսառչի: Եվ ուտելիք էլ չունի: Ստիպված ենք մեզ հետ վերցնել, թող ապրի տնակում: Առաջին իսկ ինքնաթիռով մենք նրան Մոսկվա՝ կենդանաբանական այգի կուղարկենք:

Երեկոյան այնուամենայնիվ, պելմեններ եփեցինք նաև հյուրի պատվին: Դժվար էր արջուկին կերակրելը՝ նա ոչ մի կերպ չէր հասկանում, որ պետք է խտացրած կաթ լակի ամանից: Ծատ անկիրթ հյուր դուրս եկավ՝ չփչփացնում էր, կաթը թափում հատակին:

Այսպես մեր արշավախումբը իր վեցերորդ անդամն ունեցավ: Մենք նրան պաշտոնապես հաստիքի մեջ մտցրինք, կերաբաժին հատկացրինք: Որովհետև արջուկը շուտով մեզ բոկրսեց օգնել, և այն էլ՝ ոչ վատ:

Որջ հայտնաբերելն այնքան էլ հեշտ չէ: Կամ անցքը վատ է երևում, կամ բուքն է ձնով ծածկած լինում: Ամենադժվարը, իհարկե, այն է, որ դժվար է իմանալ՝ զբաղվա՞ծ է որջը, թե ոչ: Մեր շունը դեռ փոքր էր ու անփորձ, որջին մոտենում էր ըստ տրամադրության: Իսկ նրա տրամադրությունը փոփոխական էր: Ստիպված էինք լինում ինքներս մագլցել լեռները, ձյան կտորներ շպրտել անցքի վրա: «Գուցե արջուկի՞ն օգտագործենք»,— մտածեցինք մենք: Եթե նա որջի մուտքի մոտ ռռնա, ո՞ր մայր արջը կդիմանա միայնակ ձագուկի կանչին ու գլուխը դուրս չի հանի:

Եվ ահա մի օր երկար վզափոկով վզնոց պատրաստեցինք և նրան մեզ հետ աշխատանքի տարանք: Մոտեցանք սարալանջին, որտեղից երևում էր որջի անցքը. «Դե՛, արջո՜ւկ, գործի՛ր հանուն գիտության ծաղկման»: Բայց արջուկը, որն ուրիշ ժամանակ երախը չէր փակում և անդադար ռռնում էր, հիմա լռել էր: Կպել էր մեր ոտքերին, վալենկաների արանքն էր մտել և ոչ մի ձայն չէր հանում: Ի՞նչ անեինք: Այստեղ արդեն մենք մի ննեց միտք հղացանք: Թիակը խրեցինք ձյան մեջ, արջուկին վզափոկից կապեցինք թիակին: Իսկ ինքներս մոտ մի հիսուն մետր հեռու փախանք: Եվ արջուկը «խոսեց»: Արջային կոկորդով մեկ սկսեց ռռնալ: Մի րոպե չանցած լանջի վրայի ճեղքից էգ արջը գլուխը դուրս հանեց: Նրա մայրական սիրտը չդիմացավ:

Արջուկը մեզ հետ երկար չաշխատեց, ընդամենը մի քանի օր: Երբ մենք առանց նրան մնացինք, որջերի մոտ էինք տանում մագնիտաֆոնը, մեր հյուրի ռռնոցի ձայնագրությամբ: Միացնում էինք ու սպասում: Լեռների մեջ բարձր հնչում էր արշավախմբի փոքրիկ բարեկամի ողբը: Նա շարունակում էր օգնել գիտնականներին: Եվ դեռ շատ կօգնի՝ հաջորդ արշավախմբի ժամանակ:

*Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ*

## ԸՆԴԴԵՄ ՀԱՐԱԲԵՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅԱՆ



Փողոցային պատահարներն աշխարհում այնքան են շատացել, որ թերթերում տպագրվելուց հետո էլ անմիջապես մոռացվում են: Սակայն Նորվեգական Բյարկյեհ քաղաքում, որը գտնվում է Վեստերոլեն արշիպելագի փոքրիկ կղզում, երկու մեքենաների ընդհարումը անվերջանալի խոսակցությունների և բազմաթիվ դատական վերաքննությունների առիթ տվեց: Պատահարի նշանակությունը հասկանալի է դառնում, եթե հաշվի առնենք, որ կղզու միակ մարդատարը բախվել էր միակ բեռնատարին... այն էլ քաղաքի միակ փողոցում:

## ԳԱՅԼԵՐՆ ՈՒ ՈՉԽԱՐՆԵՐԸ



«Ոչխարները ավելի երկար կապրեն, եթե նրանց մի լավ պղպեղեք»,— հաստատում են Վայոմինգ նահանգի գիտնականները: Ոչխարներին գայլերից պաշտպանելու համար Միացյալ Նահանգներում գիտնականները արհեստական դեղանյութ են ստեղծել, որը կծու պղպեղի ուժեղ համ ունի: Այդ լուծույթով հաճախակի թրջում են ոչխարներին: Բավական է, որ գայլը հարձակվի «մշակված» ոչխարներից որևէ մեկի վրա, այնքան ուժեղ կայրի երախը, որ երկար ժամանակ ոչխարի միս ուտելու ցանկություն չի ունենա:

## «ԻՍԿ ԱՅԴ ՄԱՍԻՆ ՁԵԶ ԿՊԱՏՄԻ ԻՄ ՎԱՐՈՐԴԸ»



1969 թվականին սրտի պատվաստման ճանաչված մասնագետ Քրիստիան Բերնարդը հարավային Ֆրանսիայի տարբեր քաղաքներում հանդես էր գալիս հանրամատչելի զեկուցումների շարքով: Նրա վարորդը, խելամիտ ու կրթված մի տղա, նստում էր դահլիճում և միշտ ուշադիր լսում իր խնամակալի ելույթները: Բերնարդը մի անգամ վարորդին խնդրեց իր փոխարեն զեկուցում կարդալ:

Այդ երեկո պրոֆեսորը վարորդի արտահագուստով նստել էր դահլիճում, իսկ վարորդը հրաշալի զեկուցում կարդաց և առանց դժվարության պատասխանեց ունկնդիրների հարցերին: Այնուամենայնիվ, մի տիկնոջ հարցի նա դժվարացավ պատասխանել: Սակայն չշփոթվեց.

— Խնդրում եմ, ներեցեք, տիկին,— ասաց նա:— Ես հոգնել եմ, գնում եմ հանգստանալու: Իմ փոխարեն ձեզ հանգամանորեն կպատասխանի իմ վարորդը:

# ԳԻԳԱՆՏ ԹԻԹԵՌ

Դպրոցականի «ԿԱՐՄԻՐ ԳԻՐՔ»



Տաք եղանակները սկսվելու հետ, մինչև ուշ աշուն, ամենուրեք ծաղկից-ծաղիկ են թռչում գույնզգույն ու խայտաբղետ թիթեռները, որոնք գեղագիտական մեծ հաճույք են պատճառում ոչ միայն մանուկներին, այլ նաև մեծահասակներին: Սակայն դրանց մեծ մասի գեղեցիկ արտաքինը դժբախտաբար խաբուսիկ է: Այդ «թռչող ծաղիկները» գյուղատնտեսական կուլտուրաների անկուշտ վնասատուների թիթեռներն են, որոնք ձվադրելուց հետո ոչնչանում են, իսկ նրանց դրած անթիվ-անհամար ձվերից դուրս են հորդում վնասակար թրթուրները և անմիջապես գրոհում վայրի բույսերի կամ գյուղատնտեսական զանազան կուլտուրաների վրա:

Սակայն բոլոր գեղեցիկ թրթուրները չէ, որ մեծ քանակությամբ գյուղատնտեսական կուլտուրաներ ու մթերքներ են ոչնչացնում: Կան նաև միանգամայն անվնաս կամ աննշան վնաս հասցնող մի շարք միջատներ, որոնց թիթեռները մարդկանց գեղագիտական նույնպիսի հաճույք են պատճառում, ինչպես լավագույն ծաղիկները: Առանց այդ թիթեռների բնությունը կողոպտված կթվար:

Դրանց թվին է պատկանում մեր հանրապետությունում հազվագյուտ հանդիպող մրգահավաթիթեռը կամ տանձենու սատուրնիան: Դա արտակարգ խոշոր և չափազանց գեղեցիկ թիթեռ է, իր չափսերով

ամենամեծն է ոչ միայն Հայաստանում, այլև ողջ Եվրոպայում: Նրա թևերի բացվածքը կազմում է 14—16 սանտիմետր: Մրգահավաթիթեռ է կոչվում, որովհետև թևերի վերին անկյուններում կրում է մինչև 1,5 սանտիմետր տրամագծով բազմերանգ խալեր («աչքեր»), որոնք նման են մրգահավի պոչի փետուրների վրայի «աչքերին»: Դրանք արտաքինից շրջապատված են սև օղակով, որի ներսում գըտնըվում է լուսնաձև մի նկար՝ ծածկված արծաթագույն, ապա՝ կարմրագորշավուն օղակներով:

Երբ թիթեռը հանգիստ նստած է, բավականին սարսափազդու տեսք ունի, քանի որ այդ «աչքերը» նմանվում են բուի չարագուշակ աչքերի:

Խոշոր ու գեղեցիկ է նաև մրգահավաթիթեռի թրթուրը, որի երկարությունը հասնում է 12, իսկ տըրամագիծը՝ 1,4 սմ-ի: Դեղնականաչավուն է, խոր, ընդլայնակի ակոսներով: Ոտիկները դարչնագույն են: Թրթուրը վերևի կողմից կրում է աստղաձև կապտավուն հավելվածքներ՝ երկար եղուստներով:

Մրգահավաթիթեռի թրթուրը ավելի հաճախ հանդիպում է տանձենու, խնձորենու, բալենու, հաճարենու, սալորենու վրա: Դրանք խիստ շատակեր են. յուրաքանչյուր թրթուր իր կյանքի ընթացքում կարող է ոչնչացնել ավելի քան 200 տերև: Այնուամենայնիվ, աննշան տարածվածության շնորհիվ այս միջատի պատճառած վնասը նույնպես աննշան է և կարելի է անտեսել:

Ներկայումս մրգահավաթիթեռը մեր հանրապետության սահմաններում հանդիպում է Արարատյան դաշտում, Զանգեզուրում, Հրազդանի շրջանում:

Թիթեռի թռիչքը դիտվում է մայիս—հունիս ամիսներին, իսկ առանձին դեպքերում նաև ավելի ուշ: Դրանցից 2—3 օր հետո սկսվում է թիթեռների ձվադրումը:

Մրգահավաթիթեռը հայոց բնաշխարհի հիքնատիպ հրաշալիքներից մեկն է: Ցավոք, վերջին տարիներին նկատվում է, որ այս չափազանց հետաքրքիր ու գիտության համար արժեքավոր թիթեռը աստիճանաբար անհետանում է: Դա պետք է անհանգստացնի մեր հանրապետության պատանի բնասերներին և բազմապատկի նրանց ջանքերը՝ այս հազվագյուտ ու գեղեցիկ թիթեռը պահպանելու համար:

*ՆՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր*

## ԻՆՉՈՒ ԵՆՔ ԱՅԴՊԵՍ ԱՍՈՒՄ

Սիրամարգի փետուրներով ագռավ: Այս արտահայտությունը ծագել է Ի. Ա. Կռիլովի «Ագռավը» առակից: Այսպես են ասում այն մարդու մասին, որն իրեն է վերագրում ուրիշի արժանիքները և ընկնում ծիծաղելի վիճակի մեջ:

Լուկուլլոսյան խրախճանք: Ծագել է հին Հռոմի կոնսուլ Լյուցիոս Լուկուլլոսի անունից: Նա ապրել է մեր թըվականությունից առաջ 106—56 թվականներին, ունեցել է վիթխարի հարստություն և հաճախակի կազմակերպել է ճոխ, ընտիր խրախճանքներ:

Ձեռքերդ հեռու: Այս արտահայտությունը որպես քաղաքական լոզունգ գործածել է Անգլիայի մինիստրը Վիլյամ Գլադըստոնը Ավստրիայի հասցեին, որը 1878 թվականին գրավել էր Բոսնիան և Հերցեգովինան: Այս լոզունգը մինչև այսօր էլ գործածվում է որպես որևէ մեկի գործերին չմիջամտելու պահանջ:

**ՊԻՈՆԵՐԱԿԱՆ**
*և դպրոցական կյանք*

# ԲՈՒՅՍԵՐՆ ԶԳՈՒՄ ԵՆ...

Ցածր դասարաններում ես կարծում էի, թե ուսուցիչները դասավանդում են միայն հայոց լեզու և մաթեմատիկա: Իսկ երբ ընկեր Սողոմոնյանը սկսեց մեզ կենսաբանություն ավանդել, ես շատ սիրեցի այդ առարկան: Պատճառը երևի այն է. որ նա հենց առաջին օրից իր շուրջը համախմբեց կենսաբանություն սիրող բոլոր աշակերտներին: Օրեցօր խորացնում էր մեր մեջ հետաքրքրությունը դեպի բույսերն ու կենդանիները, նրանց ապրելակերպը, զարգանալու և անհետանալու խորհրդավոր աշխարհը: Իմ երևակայության մեջ բույսերն էլ են խոսում, զգում, գոհ կամ դժգոհ մնում: Ես պատրաստ եմ հաղթահարելու ամեն դժվարություն և հասնել իմ ցանկալի նպատակին՝ դառնալ կենսաբան:

*ՄԱՐԻԵՏԱ ՆԵՐՍԻՍՅԱՆ*
*Եղեգնաձորի շրջ., գ. Ջիվա,*
*6-րդ դաս.*



## ՀԱԶԱՐ ՈՒ ՄԻ ՀԱՐՑ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ

# ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ

1.Կուրիլյան կղզիների Իտուրուպ կղզու հյուսիսարևելյան մասով հոսում է առասպելական դյուցազուն Իլյա Մուրոմեցի անունը կրող գետը,. որի վճիտ ու թափանցիկ ջրերը գահավիժում են 141 մետր բարձրությունից:

2. Կիվու լիճն է: Գտնվում է Ռուանդա հանրապետության Կիտուրո հրաբխային լեռան մոտ: Հրաբխի ժայթքման ժամանակ շիկացած լավան հոսում է դեպի լիճ և ջուրն սկսում է եռալ և եփել իր մեջ եղած ձկները: Վերջին անգամ Կիվու լիճը ձկնապուրի կաթսայի է վերածվել 1948 թվին:

8. Բերինգյան ծովի Կոմանդորյան կղզիներում (ՍՍՀՄ) և նույն ծովի Պրիբիլովա կղզում (ԱՄՆ):

4. Ծով՝ ՍՍՀՄ հյուսիս-արևմուտքում, լիճ՝ Վոլոգդայի մարզում, գետ՝ Բաշկիրիայում (Կամայի վտակ), գետ՝ Չուկոտկայում (Անադիրի վտակ), գետ՝ Կրասնոդարի երկրամասում (Կուբանի վտակ):





Մարտիրոս Սարյանի թանգարանում բացվել էր աշխարհահռչակ հայ ծովանկարիչ Հովհաննես Այվազովսկու ստեղծագործությունների ցուցահանդեսը։



*ՀՈՎՀ. ԱՅՎԱԶՈՎՍԿԻ — Մոր դիմանկարը*

Գունավոր լուսանկարը՝
ՎԻԿՏՈՐ ԱՏՐՅԱՆԻ

**5.** Լիճը առաջացել է նրա մեջ թափվող երկու ոչ մեծ գետերի ջրերից։ Նրանցից մեկը հոսում է երկաթ պարունակող լեռնային ապարների միջով, որի ջրերը հագեցված են երկաթի աղերով, իսկ մյուսը սնվում է տորֆային ճահիճների ջրերով, որոնք պարունակում են այնպիսի նյութեր, ինչպիսին է թանաքի գդտորը։

Այդ երկու գետերի ջրերի խառնուրդից էլ ստացվել է լճի պարունակությունը՝ թանաքը։ Լճում դուք չեք տեսնի ոչ մի կենդանի էակ։ Նրա «ջրերը» պիտանի են միայն գրելու համար։

**6.** Հյուսիսային բևեռում։ Հյուսիսային սառուցյալ օվկիանոս են թափվում աշխարհի խոշոր գետերից Լենան, Ենիսեյը, Օբը, Պեչորան և մյուսները, համեմատաբար տաքացնելով օվկիանոսի ջրերը։

Իսկ հարավային բևեռում՝ Անտարկտիդա մայր ցամաքի մթնոլորտի թեկուզ աննշան տաքացում տեղի չի ունենում։

**7.** 1595 թվականին, երբ հրատարակվեց Մերկատորի քարտեզների նշանավոր հավաքածուն, դրա շապկի վրա պատկերված էր հունական դիցաբանության հերոս Ատլասը, որը ըստ ավանդության, ձեռքերի վրա էր պահում երկրագունդը (Ատլանտը)։ Սկսած այդ ժամանակից քարտեզների հավաքածուն «ատլաս» անունն է կրել։

**8.** Հյուսիսային բևեռում։

**9.** Մագնիտոգորսկում։ Քաղաքը գտնվում է Ուրալ գետի աջ ափին, այսինքն Եվրոպայում, իսկ մետալուրգիական կոմբինատը ձախ ափին՝ Ասիայում։

**10.** Իրանի Դիալա գետն է։ Մի անգամ այդ գետում խեղդվում է Պարսկաստանի արքա Կյուրոսի սպիտակ ձին։ Գազազած արքան հրամայում է վերին հոսանքում փորել 860 ջրանցք, որպեսզի երկրի երեսից իսպառ վերանար Դիալա անունը։ Արքայի հրամանը կատարվում է, և Դիալա գետը ամբողջ 1000 տարի դադարում է գոյություն ունենալուց։ Բայց անապատի ավազները աստիճանաբար լցվում են արքայի փորած ջրանցքները, Դիալան նորից կենդանանում և հոսում է իր նախկին հունով։

*ԿԱՐՈ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*Հանրապետության վաստակավոր ուսուցիչ*



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-38, 56-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 3 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1980



Շապիկի առաջին էջին՝
ԱՐՄԵՆ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ, «ՓԻՂԸ», 6 տ.
Լուսանկարը՝ ԱՎԵՏ ԵՍԱՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր)։

Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՎՖ04681։ Պատվեր 185։ Տպաքանակ 52244։ Տպ. 3 մամ.։ Թուղթ՝ 70×90 1/16։ Հանձնված է արտադրության 1/II 1980 թ.։ Ստորագրված է տպագրության 12/III 1980 թ.։

ՀՍՍՀ հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91։





Գտեք այս նկարներում եղած տարբերությունները:



Օգնեցեք ոզնուն գտնելու իրեն անհրաժեշտ ճանապարհները:




Այս չորս բանալիներից ո՞րը կմտնի փականքի մեջ:



Շարժիչը գործի դնելու դեպքում ո՞ր կողմը կթեքվի սլաքը:



ՍՈՒՍԱՆՆԱ ՆԱԶԱՐՅԱՆ, 13 տ., Երևան



ԿՈԼՅԱ ՊԱՊՅԱՆ, 12 տ., Նոյեմբերյանի շրջ., գ. Ոսկեվան